ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ԼԸ.

# ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

# ՓԱՒՍՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

ԳՐԵՑ

ԳՐ. ՏԷՐ-ՊՕՂՈՍԵԱՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1901

ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

ՓԱՒՍՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԼԶ.

# ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

# ՓԱՒՍՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ՎԵՐԱԲԵՐԵԱԼ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

Tēr-Pōghosian, Grigor

Nkatoghut'iwnner P'awstosi...

# ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

# ՓԱՒՍՏՈՍԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ

ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

ԳՐԵՑ

ԳՐ. ՏԷՐ-ՊՕՂՈՍԵԱՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1901.

# ԾԱՆԱՑՈՒՄՆ

Փաւստոսի պատմութիւնը մատենագրական եւ պատմական խնդիրներով նիւթ է հանդիսացել բազմաթիւ հետազօտութիւնների համար. — Հ. Մ. Վ. Չամչեան, Հ. Ղ. Վ. Ինճիճեան, Հ. Ա. Այտնեան, Հրատ. Մխիթարեան Հարք, Նորայր Բիւզանդացի, Հ. Ց. Վ. Գաթրճեան, Ն. Մատաթեան, Ա. Մ. Գարագաշեան, Մ. Էմին, Հ. Գ. Վ. Զարբանալեան, Ն. Քարամեան, Ս. Մալխասեան, Ց. Դաղբաշեան, Գր. Խալաթեան, Ք. Պատկանեան, Հ. Բ. Վ. Սարգսեան, Հ. Գ. Վ. Մէնէվիշեան, Հ. Ց. Վ. Տաշեան, Սէն-Մարտէն, Նէօման, Փետտէր, Գուտշմիդ, Գելցէր, Մարքարտ — ահա հայագէտ բանասէրների այն պատկառելի գումարը, որով ստեղծուած է Փաւստոսի գրականութեան ներկայ ժողովածուն:

Թէպէտ այս ընդարձակ աշխատութիւնն իւր որակով եւ քանակով հարկադրելու ոյժ ունի Փաւստոսի գրականութիւնը դասելու առաջինը, զկնի պատմահօր գրականութեան, այնու ամենայնիւ Փաւստոսի պատմութեան առեղծուածն եւս դեռ մնում է չլուծուած: Բոլոր հետազօտութիւնները նայում են պատասխանելու հինգ հարցի. — ո՛վ է եւ ինչ ազգից է հեղինակը, երբ է գրուել եւ ինչ լեզուով, ինչ նշանակութիւն ունի այդ յիշատակարանը պատմութեան համար, — բայց հետազօտութիւնները դեռ եւս չեն խմբուած որեւէ եզրակացութեան շուրջը, որին այս կամ այն չափով կարողանային միտուել քննադատների մէկը միւսին ժխտող կարծիքներն այդ հարցերի մասին. եւ մի գրքոյկ, որ

վերջերս փորձում էր, իբր վճռական մտքով, այդ հարցերից առաջին չորսը լուծել հայ հողի վրայ, հակառակ սպասածին՝ պատճառ հանդիսացաւ անմիջապէս պնդելու, թէ ճշմարտութիւնն այն քննադատների կողմն է իբր, որոնց կարծիքները հակառակ տեսութիւնը պաշտպանելու նշանակութիւն ունին (Հանդէս Ամս. 1896, 200—208, Ա. Մ. Գարագաշեան):

Եթէ Փաւստոսի գրականութիւնը տեսակաւորել կամենանք, կից բազմատեսակ առարկութիւնների, տարբեր հայեցակէտերի, եւ նպատակաւոր՝ յաճախ թիւր մեկնութիւնների, երկու ընդհանուր բաժանմունք կը ստանանք. մինչ բանասէրների մի խումբը հեղինակի ազգը, լեզուն, հայեցակէտն եւ ճաշակը յունական ծագումի հետ է միացնում, բանասէրների երկրորդ խումբը հեղինակին հայ է համարում. առաջին խումբը բնագրի ժամանակը Դ., իսկ թարգմանութի նը Ե. դարն է նշանակում, իսկ երկրորդ խումբը բնագիրը՝ առանց թարգմանութեան, իբրեւ արդի յիշատակարանը, Ե. դարու գործ է նկատում:

Թէ ինչպէս են պայմանաւորուած այդ կարծիքները, այս հարցը մեզ շատ կը հեռացնէր բուն խնդրից. դիտելու արժանին այն է, որ բոլոր կարծիքները ծագում են եւ գոյութիւն ունին մէկը միւսին կից՝ բացառապէս Փաւստոսի պատմութեան ցուցումների շնորհիւ. հեղինակին հայ կամ յոյն ճանաչելու համար՝ հիմքերը նոյն եւ մի Փաւստոսի յիշատակարանից են հայթհայթուած. Նրա լեզուն նոյնքան յունաբանութեամբ է ողողուած ներկայանում, որքան եւ հայկաբանութեամբ. Նրա մէջ նոյնքան յունամոլութիւն է խմորուած հոչակւում, որքան եւ հայամոլութիւն: Այդ պատճառով մի բանասէր թւում է յունամոլութեան նշաններն եւ յոյն է դատում հեղինակին, միւսը թւում է հայամոլութեան վկայութիւնները՝ ուստի եւ հայ ընդունում հեղինակին: Կից

այդ դրութեան միակ բանասէրն է Նորայր Բիւզանդացին, որ այդ առեղծուածը փորձում է մեկնել երկու հեղինակ ենթադրելով — հայատեաց յոյն աշխարհական եւ ասորի պաքկեշտ կրօնաւոր:

Փաւստոսի Գրականութեան ներկայ րոպէն ահա այդ վիճակի մէջ է. արդարացի է հանդիսանում կուսակցութեան մի կողմը նոյնքան, որքան եւ միւս կողմը. եւ ահա այդ պատճառով ընթացքը, որով ընդունուած է ճշմարտութիւնը որոնել այդ հարցերի մասին, հանդիսանում է նոյնքան ապարդիւն որքան եւ արդիւնաւոր: Ահա անմիջական եզրակացութիւնը, որին մատնացոյց է լինում Փաւստոսի գրականութեան արդի վիճակը:

Անհիմն չէ, որ չենք բարեհամբաւում ճշմարտութիւն որոնելու ընթացքը Փաւստոսի գրականութեան մէջ. այդ ընթացքով սկզբից ի նկատի չէ առնուած էականը, մինչ՝ ընդհակառակն, երկրորդականը նախադասուած է: Մինչ պատմահօր գրականութեան մէջ բնագրի վաւերականութեան հարցն առաջինն է՝ “Մար-Աբասի„ յիշատակարանի շնորհիւ, եւ նրա պատմական ստուգութեան խնդիրն այդ ընթացքով է զբաղեցնում քննադատներին, Փաւստոսի գրականութեան մէջ հակառակ ընթացքն է տիրում: Այն հարցը, թէ Փաւստոսի արդի յիշատակարանը, իբրեւ մատենագրական նշխար՝ ո՛ր չափով համապատասխանում է Հարազատութիւն եւ Սրբութիւն գաղափարներին, — այդ հարցն եւ նրա քննութիւնը, ազատ հեղինակի ազգից, անձից, լեզուից եւ դարից, բացակայում է Փաւստոսի գրականութիւնից: Արդարեւ, հանդիպում են հատ հատ, այս կամ այն կանխակալ կարծիքի թելադրութեամբ, անցողակի, երբեմն անլրջութեամբ կատարուած նկատողութիւններ մատենագրական հայեացքով, որոնք մոռանալու միտումը հեռու է մեզնից, բայց այդպիսիք բնաւ նշանակութիւն չունին Սրբութեան չափը սահմանելու խնդրում:

Ը

*Եթէ Փաւստոսի արդի պատմութիւնը գրուած է Դ. կամ Ե. դարում, այժմ Ի. դարի սկզբում, պահպանո՞ւմ է նա արդեօք այնքան հարազատութիւն, որ կարելի լինի կանխաւ ապահովուած, նրա ցուցումները՝ իբրեւ ամէն կասկածից դուրս, ծառայեցնել Դ. կամ Ե. դարում ապրող մատենագրի եւ նրա յիշատակարանի մասին յարուցուած այս կամ այն խնդրի լուծման — մինչ՝ այս հարցին, ըստ իս, առաջին տեղն յատկացնելու պարտիքն պէտք է զգար քննադատութիւնը, Փաւստոսի գրականութեան մէջ՝ ընդհակառակն, վերջին տեղն է այն բռնում:*

*Եւ ահա այդ հարցին պատասխանելու համար մեր "Նկատողութիւնները" առաջին փորձն է, որի մի մասը մատուցանում ենք Բանասիրութեան: Այնտեղ չեն քննուած հեղինակի ազգին, լեզուին եւ անձին վերաբերող հարցերը, եւ այդ պատճառով խուսափել ենք Փաւստոսի գրականութեան ընդարձակ տեսութիւնից եւս, թէպէտ իւրաքանչիւր դիտողութիւն, որ ուշադրութեան արժանի ենք գտել անցեալ գրականութեան մէջ, չենք մոռացել յիշել իւր տեղն ըստ պահանջման հարկի:*

Գ.Ր. ՏԷՐ-ՊՕՂՈՍԵԱՆ

# ՆԿԱՏՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ՓԱՒՍՏՈՍԻ

## ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ

*ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ — ՎԵՑԵՐՈՐԴ ԴՊՐՈՒԹԻՒՆ*

### 1.

Փաւստոսի պատմութիւնն սկսւում է մի յառաջաբանով, որ ունի "Բիւզանդարան Պատմութիւնք խոստաբանութիւն նախագիտելի„ վերնագիրը։ Այդ յառաջաբանին հետեւում է Գ. դպրութեան վերնագրերի ցանկն եւ ապա ինքը Գ. դպրութիւնն, իբրեւ սկիզբն Փաւստոսի պատմութեան։ Այնուհետեւ Դ., Ե. եւ Զ. դպրութիւնքն եւս ունին վերնագրերի ցանկ՝ նախակարգուած համապատասխանող դպրութիւնից. բայց այլ եւս յատկական նախագիտելի չունին նրանք, ըստ որում յիշեալ նախագիտելին՝ իբրեւ յառաջաբան՝ վերաբերում է չորս դպրութեանց եւս միանգամից։

Հետաքրքիր է այդ նախագիտելին իւր մասերի համեմատութեան մէջ. նա սկսւում է — "Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ պատմութեանցս. ժամանակագիր կանոնք մատենից եւ առ նմին [illegible]„. իսկ վերջանում է մի հատուածով, որի առաջին տողն է — "Եւ չորս

խոստմանս ըստ ըստ կարգացն դպրութեանց յիւրաքանչիւր յիւր գլուխս պատուաստեցի մինչեւ ի կատարած սորին„: Այսպէս Նախագիտելու առաջին եւ վերջին տողերը՝ երկուսն եւս փաւստոսի պատմութեան կազմութեան են նայում եւ այնու ամենայնիւ տարբերւում են իրարից պատմութեան ամբողջութիւնը յիշելում. մէկը նրանցից վկայում է պատմութիւնը երեք դպրութեանց մէջ, իսկ միւսը — չորս:

Նախագիտելու մէջ մի այլ տեղ ընդհանուր մտքով կարդում ենք. — "են սոքա չորք մատեանք եւ չորեքին միոյ իրաց յիշատակարանք են:„ Այստեղ "չորք մատեանք„ իմաստն անտարբեր մտքով կարող է վերաբերուիլ թէ չորք դպրութիւնից կազմուած մի պատմութեան, եւ թէ մի պատմութեան, որ ունենայ բացի երեք դպրութիւնից, նաեւ մի նախադրեալ մասն "Ժամանակագիր կանոնք մատենից„ խորագրով: Ուրեմն "են սոքա չորք մատեանք„ խօսքերն այն նշանակութիւնն ունին, որ հաշտեցնում են նախագիտելու առաջին եւ վերջին տողերի իմաստը դպրութեանց քանակութեան մասին:

Միւս կողմից, ինչպէս առաջիկայում՝ փաւստոսի պատմութեան բնագրի խնդիրը քննելու միջոցին հանգամանօրէն կը պարզենք, — այստեղ նկատել պէտք է, որ "Ժամանակագիր կանոնք մատենից„ վերնագիրն իւր արդի գործածութեանց մէջ փոխարինում է եւ գլուխ, եւ դպրութիւն, եւ ցանկ իմաստներին անխտիր կերպով. այդ վերնագիրը զանազան իմաստներով՝ նշանակուած

է մերթ ցանկի, մերթ դպրութեան եւ մերթ յատուկ մի գլխի ճակատին, եւ մերթ դպրութեան վերջում իբրեւ վերջաբան։ Իւր այդ վիճակով “Ժամանակագիր կանոնք մատենից„ վերնագիրը մի հակադրութիւն է հանդիսանում նախագիտելու տողին — “Ժամանակագիր կանոնք մատենից եւ առ նմին դպրութիւնք երեք,„ ուր այդ վերնագիրը ոչ գլուխ, ոչ դպրութիւն եւ ոչ ցանկ նշանակելու վիճակ ունի, այլ ընդհակառակն մի առանձին հատուած է ակնարկում՝ դպրութիւններից ուրոյն եւ նախադաս վիճակի մէջ։

Այսպէս ուրեմն, նախագիտելու մէջ չորս տարբեր կերպ է սահմանուած պատմութեան կազմութիւնը. 1. Ժամանակագիր կանոնք մատենից, 2. երեք դպրութիւնք, 3. չորք մատեանք եւ 4. չորք դպրութիւնք։ Արդ՝ ինչո՞վ է պայմանաւորուած այս բոլորը. ինչո՞ւ հեղինակը մի փոքրիկ յառաջաբանի մէջ պիտի գործածէր այդքան բազմազան եղանակները, որոնցով արտայայտուած է նոյն եւ մի խնդիրը։ Ինչո՞ւ հեղինակն “երեք դպրութիւն„ իմաստը տարբեր նշանակելով, քան “Ժամանակագիր կանոնք մատենից„ կոչուածը, ապա պիտի դառնար բոլորին անխտիր “չորք դպրութիւն„ կոչէր եւ այլեւս վերադիր կերպով “չորք մատեանք„ իմաստի տակ ամփոփէր թէ մէկն եւ թէ միւսը[1]։

---

1 Կարելի է մի պարզ թուաբանական գործողութիւն կատարել — արդի դպրութեանց թուից հանել նախագիտելի յիշած երեք թիւը (4—3), եւ մնացորդ մի դպրութիւնը համարել “Ժամանակագիր կանոնք մատենից„

Շարունակելով դիտել Նախագիտելին, տեսնում ենք, որ երկու այլ հատուած եւս ունի նա, որոնց մէջ կրկնուած է պատմութեան վերջին սահմանը, բայց մի հետաքրքիր տարբերութեամբ. Նրանցից մէկը հաղորդում է միայն Գ., Դ. եւ Ե. դպրութեանց բովանդակութիւնն եւ գրուածքի վերջին սահմանը նշանակում է մինչ Ե. 44՝ այն է վերջին գլուխը, իսկ միւսը յիշում է այդ բոլորը Զ. դպրութեան բովանդակութիւնն եւ գրուածքի վերջին սահմանն այս անգամ նշանակուած են Զ. դպրութեան վերջին գլուխները։ Ահա այդ հատուածները։

Ա.

Այսինքն կարգ անցելոց իրաց գործք եւ վարք մնչէ ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս քահանայապետաց սրբոց արանց Աստուծոյ, եւ թագաւորաց տէրանց աշխարհաց արշակունեաց եւ զօրավարաց՝ արանց անուանեաց քաջ նախարարաց եւ խաղաղութեան եւ պատե-

Բ.

Ժամանակագիր արարեալ ի Թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մնչէ ի միւս վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, եւ ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի մնչէ ցայնոսիկ ի վերջինան՝

---

կոչուած հատուածը։ Այդ վերջինն ապա նոյն դատել արդէ Գ. դպր. հետ, այսինքն “Ժամանակագիր կանոնք մատենից եւ առ նմին երեք դպրութիւնք” խօսքերը մեկնել “Գ. դպրութիւն եւ առ նմին Դ, Ե. եւ Զ. դպրութիւն”։ Այդպէս է դատել նաեւ Հ. Բ. Վ. Սարգսեան (Ագաթ. եւ իւր բազմ. գաղտնիք. էջ 122—3), որից սակայն նոր բան եւս տեղեկանում ենք թէ “խոստաբանութեան նախագիտելեաց մէջ՝ Գ. դպրութիւնը ժամանակագիր կանոնք մատենից կ՚անուանէ”։ Այդ ուղղակի զրպարտութիւն է, չկայ մի ձեռագիր, որի մէջ հեղինակը Գ. դպրութիւնն այդպէս անուանէր....։

բազմին եւ շինութեան եւ աւերածոյ եւ արդարութեան՝ եւ անօրէնութեան եւ աստուածպաշտութեան եւ ամբարշտութեան:

որք կային գլխաւորք եպիսկոպոսք Հայոց:

Թէ մինչեւ ուր է շարունակւում պատմութիւնը՝ այդ հարցի պատասխանն ըստ առաջին հատուածի է մինչեւ սուրբ քահանայապետների, արշակունի թագաւորների եւ քաջ զօրավարների մահը: Բայց հարկ է նկատել, որ այդ որոշումը սոսկ մահուան չէ նայում, այլ սուրբ քահանայապետների, արշակունի միապետների, եւ քաջ զօրավարների սպառուելուն: Սակայն ինչ իմաստ էլ վերագրենք, անփոփոխ է այն, որ այդ սահմանումները միանում են ըստ իմաստի ճիշդ եւ անթերի մի միայն Ե. դպրութեան վերջին գլուխներին, — 22—32՝ Ներսէսի, 37՝ վերջին Արշակունի միապետի, եւ 44՝ Մանուէլի մահուան նկարագիրներն են: Այն էլ նկատենք, որ առաջին հատուածի սահմանած կէտերի մէջ չկայ մէկը, որ Ե. դպրութեան չվերաբերէր, այլ վերաբերէր Զ. դպրութեան, ուր բացակայում է որեւէ զօրավարի մասին յիշատակութիւնը, նոյնպէս որեւէ Արշակունի միապետի մահուան նկարագիրը. այնտեղ յիշւում են երկու թագաւոր, որոնց մահն իսկ չէ յիշուած: Նոյն կերպ Զ. դպրութեան մէջ յիշուած են Ս. Ներսէսի յաջորդները, բայց նրանք սուրբ արք Աստուծոյ չեն կոչուած հեղինակից, այլ ընդհակառակն ագահ եւ անուղղայ գնացիւք. Նոյն իսկ քահանայապետ չեն կոչուած այլ սոսկ “գլխաւոր եպիսկոպոսաց„:

Այսպէս ուրեմն առաջին հատուածի որոշումից դուրս է մնում Զ. դպրութիւնը, որի մէջ պատմուած է Արշակունեաց իշխանութեան վատթարանալն եւ գլխաւոր կոչուած եպիսկոպոսների ցուցակը. ուստի հարկաւոր էր մի երկրորդ որոշումն կցել առաջինին, եւ ահա այդ երկրորդ որոշումը գտնում ենք երկրորդ հատուածի մէջ. այս երկրորդ որոշումով է, որ Զ. դպրութիւնը կարողանում է կցուիլ Ե. դպրութեան ծայրին՝ զկնի առաջին հատուածի սահմանման. ըստ երկրորդ հատուածի, պատմութիւնը շարունակւում է մինչեւ թագաւորների վատթարելու ժամանակն եւ “մինչեւ ցայնոսիկ ի վերջինսն, որք կային գլխաւոր եպիսկոպոսք Հայոց„։

Սակայն օրինակով աւելի պարզ կացուցած պիտի լինենք երկու հատուածների տարբեր նշանակութիւնը. եթէ հրատարակուի միայն ա հատուածն եւ նրան հետեւին Գ. Դ. եւ Ե. դպրութիւնքը միայն, այդպիսի խմբագրութեամբ եւս անվիճելի կը հանդիսանայ Փաւստոսի պատմութեան ամբողջութիւնը. իսկ եթէ ա. հատուածին հետեւեն բոլոր չորս դպրութիւնքը — այն դէպքում Զ. դպրութեան ներկայութիւնը չէր կապուիլ։ Նախագիտելու՝ այսինքն ա հատուածի հետ այդ կապն ունենալու համար հարկաւոր է անպատճառ բ հատուածի ներկայութիւնը։

Այսպէս՝ ամփոփելով տեսնում ենք, որ երկու կարգի կրկնութիւն ունի նախագիտելին. նախ՝ յիշուած է պատմութեան կազմութիւնը միանգամ երեք, միւս անգամ չորս դպրութեան

մէջ. երկրորդ՝ յիշուած է պատմութեան վերջին սահմանը, որ համապատասխանում է մի անգամ Ե. դպրութեան, միւս անգամ՝ Զ. դպրութեան վերջին գլուխներին։ Այդ կրկնութիւնները զուգադիպօրէն միանում են եւ վկայում թէ՛ նախագիտելու եւ թէ՛ ամբողջ պատմութեան այլայլումն ըստ կազմութեան եւ ըստ բովանդակութեան. ըստ կազմութեան — որովհետեւ այն բաժանմունքը, որ հասկանալի է “ժամանակագիր կանոնք մատենից եւ առ նմին դպրութիւնք երեք„ խօսքերից, ներկայ Փաւստոսի պատմութիւնը չունի։ Ըստ բովանդակութեան — որովհետեւ ժամանակագիր կանոնք մատենից հատուածը չկայ դպրութիւնների շարքում եւ նախադաս վիճակով, եւ բացի այդ՝ բնագրի վերջնական սահմանը համապատասխանում էր Ե. դպրութեան վերջին գլուխներին, իսկ այժմ այդ սահմանն ընդարձակեցրած է մինչեւ Զ. դպրութեան վերջին գլուխները։[1]

---

Նախորդ եզրակացութիւնից շատ խնդիրներ են ծագում. որոնել “ժամանակագիր կանոնք մատենից„ հատուածի հետքերը, վերականգնել բնագրի արտաքին կազմութիւնն եւ ներքին բովանդակութիւնը, մեկուսացնել արդի խմբագրութեան մէջ յետսամուտ մասերը, սահմանել

---

1 Փաւստոսի պատմութեան խոստաբանութեան “շատ մութ„ լինելը հիմք առնելով, Ա. Գարագաշեան նկատել է, թէ խոստաբանութիւնը մի երկրորդ գրչի գործ է եւ ոչ թէ բուն հեղինակի. (Տես “Հանդէս Ամս.„ 1896/200բ)։

այլայլման ժամանակը, դրդիչ պայմաններն եւ այլայլման ժամանակակից գրականութիւնն առընչաբար եւն եւն։ Բայց այդ բոլորը մենք կը բաժանենք եւ "Նկատողութիւններիս" Բ. եւ Գ. մասերի մէջ կը քննենք այդ խնդիրները. իսկ յաջորդ էջերում պիտի նկարագրենք Զ. դպրութեան յետսամուտ վիճակը միայն։

## 2.

Նախագիտելուց յետոյ, առաջինը Զ. դպրութիւնն ինքն է, որ իւր գոյութիւն ստանալու հարցը թէ՛ ժամանակի եւ թէ՛ եղանակի նկատմամբ՝ հիմներ է ներկայացնում վճռելու այնպէս, թէ այն կարկատան է եւ կցուած է փաւստոսի պատմութեան ուշ ժամանակ։

Նախ եւ առաջ դիտենք խմբագրական քանի մի անսովորութիւններ։

Նախակարգուած մի ցանկ եւ ապա պատմութիւնը 16 գլխի բաժանած, ութածալ 12 սուղ էջի մէջ՝ ահա Զ. դպրութեան արտաքին պատկերը։ Ապա ութ տողից կազմուած մի վերնագիր մէկ եւ կէս էջ պատմութեան համար, որն առաջին գլխի մէջ կենդրոնացած է, իբրեւ քաղաքական պատմութիւն։ Երկրորդ վերնագիրն այդ մտքով մի հակապատկեր է առաջին վերնագրին. նա բովանդակում է միանգամից 12 գլխի բովանդակութիւնը՝ այն է Բ—Է եւ ԺԱ—ԺԵ, մինչ առաջին վերնագիրը նայում է մի միայն առաջին գլխին։ — Չնայած իւր ընդարձակ բովանդակութեան, այնու ամենայնիւ

երկրորդ վերնագիրը տեղաւորուած է երկրորդ գլխի ճակատին, իբրեւ նրան յատուկ: Ահա այդ վերնագիրը. “Յաղագս եպիսկոպոսացն, որ երեւելիք էին յայնմ ժամանակի ի մասինն յաշխարհին խոսրովու յերկրին Հայոց՝ որ ընդ Պարսից ձեռամբ էին:„ — Բայց նա, որ այս վերնագիրը տեղաւորել է Բ. գլխի ճակատին, նա ինքն էլ նկատել է եւ փորձ է արել ուղղելու իւր սխալը յատկապէս Բ. գլխի համար մի վերնագիր ստեղծելով, որն եւ կցել է ընդհանուր վերնագրին. “Նախ վասն վարուց Ջաւինայ„

Շուտափոյթ եզրակացութիւն չենք ուզում անել: Այդպիսի երեւոյթ Զ. դպրութեան մէջ միակը չէ, եւ երկրորդ օրինակն ակնյայտնի է կացուցանում կցկցումը: Երեւելի եպիսկոպոսների պատմութիւնը Բ—Է եւ ԺԱ—ԺԵ գլուխների մէջ է, իսկ միջանկեալ Ը—Ժ գլուխները մի անարժան, ագահ եւ տգէտ եպիսկոպոսի պատմութիւնն է. այդ պատճառով՝ ըստ բովանդակութեան, շարքի միջից դուրս են մնում նոքա եւ չեն մտնում Բ. գլխի ճակատին նկատած ընդհանուր վերնագրի տակ: Բայց այդ երեք գլուխը շարքից դուրս են մնում նաեւ ըստ կազմութեան. Ը գլուխն ունի մի վերնագիր, որ ամփոփում է նաեւ Թ եւ Ժ գլուխների բովանդակութիւնը, որ է — “Յաղագս Յոհաննու եպիսկոպոսի եւ վարուց նորա եւ ագահութեան սորա, եւ անմտութեան եւ շաղաշուտ խօսիցն եւ գործոցն (= Ը), եւ նշանացն, որ յԱստուծոյ ի վերայ նորա եղեն երբեմն (= Թ), եթէ որպէս

մեղօք հայցէր եւ առնոյր զագահութիւն ի Թագաւորացն (= Ժ)„: Այս ընդարձակ վերնագիրը, որ՝ համաձայն մեր փակագծերի, պիտի բաժանուած լինէր Ը, Թ եւ Ժ գլուխների ճակատին, այժմ միայն Ը գլխին է կցուած, իսկ Թ եւ Ժ գլուխների համար նշանակուած են “Յաղագս Նորին Յոհաննու„ ձեւով վերնագրեր:

Այս երեւոյթը մանաւանդ՝ որեւէ ենթադրութիւն չի թոյլատրում. պարզ է, որ խմբագրողը հատուածների է բաժանել մատենագրական նշխարի ամբողջութիւնը՝ գլուխներ ստանալու նպատակով, եւ այդ ամբողջութեան վերնագիրն ընդօրինակելով հատուածներից առաջինի համար, անգիտաբար անհոգ է գտնուել կամ անուշադիր, վերնագիրն եւս բաժանել մասերի եւ տեղաւորել համապատասխանող գլուխների ճակատին. բայց նորստեղծ երկու գլխի համար՝ այնու ամենայնիւ, վերնագրի կարիք տեսնելով, միամտօրէն, նրանց վերնագիրը Ը գլխի ճակատին թողնելուց յետոյ, ստեղծել է կրկնաբար “Յաղագս Նորին Յոհաննու„ ձեւով երկու վերնագիր: Նոյն կերպ գոյացել են նաեւ Բ—Է եւ ԺԱ—ԺԵ գլուխները, եւ նրանց վերնագրերը “Յաղագս (այս անուն) եպիսկոպոսին„ ձեւով:

Դիտելով ուրեմն գլուխների արտաքին կազմութիւնն իւր արդի վիճակով՝ տեսնում ենք որ Զ. դպրութեան 16. գլուխը չորս մասի է բաժանւում, չորս մատենագրական նշխարից գոյացած նկատելով ամբողջ դպրութիւնը. 1) Զ. Ա, 2) Զ. Բ—Է եւ ԺԱ—ԺԵ, 3) Զ. Ը—Ժ եւ

4) Զ. ԺԶ — ահա այն բաժանմունքը, որին համապատասխան են գլուխները նաեւ ըստ բովանդակութեան։

Բայց մատենագրական նշխարի ամբողջութիւնը գլուխների բաժանելու մէջ իսկ ուշադիր չէ եղած խմբագրողը. քերականական ձեւը, որ ամբողջութեան վիճակում ըստ տեղի է գործածուած եղել, բաժան մասերի մէջ նոյն ձեւն այսօր անտեղի է ներկայանում. այդպէս է Դ գլխի նախադասութիւնը. “բայց միայն վասն կրօնից հանդերձոյն զեդեալ կարգն ըստ կրօնիցն Զաւինայ գնային սոքա„։ Դ գլխի մէջ խօսքը միայն Ասպուրակէսի մասին է եւ այդ պատճառով գործողութիւն նշանակող խօսքերն եզակի պիտի լինեն, ինչպէս եւ են “եկաց, առաջնորդեաց.. այդ երկու խօսքից յետոյ մնաւանդ “գնային սոքա„ ձեւը պարտ ենք վերագրել սոսկ անհնազանդ գրչի կամակորութեան, որ անփոփոխ ընդօրինակել է աղբիւրից այն ինչ որ յարմար էր նրա ամբողջութեան, ուր խօսքը նաեւ Շահակին էր վերաբերում։ Իսկ այսօր Շահակի պատմութիւնը նախորդ գլխի մէջ դնելով, եւ այն տեղ լռելով Շահակի պճնասիրութեան մասին — հետեւեալ գլխում Ասպուրակի պատմութեան մէջ Շահակի պատմութիւնը նորից յիշելն է ահա, որ անտեղի է դառնում, “գնային սոքա„ ձեւի մէջ։

Գլուխներ ստեղծել, Դպրութիւն կազմել — այդ ջանքն այնքան զօրեղ է եղել խմբագրողի մէջ, որ առանց նկատելու, տարբեր աղ-

բիւրներից քաղել է միեւնոյն պատմութիւնն եւ երկու գլուխ է կազմել. օր. Ասպուրակին են նայում միանգամից Դ եւ ԺԵ գլուխները. աղբիւրը տարբեր լինելն երեւում է նրանից, որ 1. ԺԵ ի մէջ "գնային սուքա" ձեւը դարձել է "գնայր նա". 2. "Ղամղայեալ" խօսքը ոչ Շահակի եւ Ասպուրակի եւ ոչ իսկ Ջաւէնի մասին չէ գործածուած Բ—Դ գլ. մէջ, ուրեմն յատուկ է հանդիսանում այն աղբիւրին, որից քաղուած է ԺԵ գլ.. 3. ԺԵի մէջ չէ յիշուած թէ Ասպուրակ Աղբիանոսի տոհմից է կամ Մանազկերտից է, ինչպէս այդ յիշուած է Դ գլխի մէջ. 4. ԺԵ ի մէջ Ասպուրակ յիշւում է Թոյլ հովիւ, իսկ Դ գլխի մէջ Թուլութեան մասին ոչ մի խօսք չկայ, այլ դրա փոխարէն յիշւում է իբրեւ առաջնորդող դրանն Խոսրովու. այդ պաշտօնն իբրեւ նշանաւոր վարում էր երբեմն Աղբիանոս, ըստ Ագաթանգեղոսի (պր. ՃԻԱ)։

Է եւ ԺԳ գլուխները նոյնպէս կրկնութիւն են. երկու գլուխներն եւս Բասենոյ եպիսկոպոսներին են յիշում։ Բայց հեղինակ խմբագրողն ունի օրինակներ, որ մի գլխի մէջ երկու անձի մասին միանգամից է պատմել նա. այդպէս է Ա. գլ. Փաւստոս եւ Զորթ եպիսկոպոսների մասին, այդպէս է ԺԳ գլուխը, ուր Տիրիկ եւ Մովսէս եպիսկոպոսներն են յիշուած։ Արդ՝ այդ սովորութիւնն ունենալուց յետոյ, մանաւանդ թէ Բասենի երկու եպիսկոպոսին մի գլխի մէջ յիշելուց յետոյ, նոյն Բասենի երրորդ եպիսկոպոսին մի առանձին Է.րդ գլուխն յատկացնելը կամ աղ-

*բիւրի տարբերութեան եւ կամ գլուխներ ստեղծելու ջանքի արդիւնք է հանդիսանում։ Այդ մտքով պակաս հետաքրքիր չէ եւ հետեւեալը. միայնակեացների պատմութիւնը Զ. դպրութեան մէջ մեկուսի դիրքով ամփոփուած է ԺԶ.րդ գլխի մէջ, ուր յիշուած են Գինդ եւ իւր աշակերտները. այդպիսի խմբագրական վարմունքի տէր մի հեղինակ յանկարծ առանձին գլխով, եպիսկոպոսների պատմութեան շարքում, Զ.րդ գլխի մէջ պատմում է մի միայնակեացի մասին — Առոստոմի։ Հասկանալի է, որ մի դրդիչ պատճառ եղել է այդ բոլորի համար. եւ պատճառն այն է, որ Ե եւ Զ.րդ գլուխներն իրարից անբաժան մի հատուած էին երբեմն, որը խմբագրողն երկու մասի բաժանելով թողել է իրար մօտաւոր վիճակի մէջ էլ։*

*Այց այդ բոլորին նկատել հարկաւոր է նաեւ, որ Ասպուրակի պատմութեան, Բասենի եպիսկոպոսների եւ միայնակեացների կրկնաբար յիշատակութիւնը մի խելացի հմտութեամբ դասաւորուած են երկրորդ ընդհանուր վերնագրի ընդարձակ գլուխներից առաջ եւ յետոյ. այդ հեռաւոր դիրքով անզգալի է դառնում միեւնոյն անձի եւ նոյնիմաստ պատմութեան կրկնաբար յիշումը։ Բայց խմբագրողը ստիպուած է եղել հատուածներն իրար մէջ հիւսել, որպէս զի նրանց միութեան հետքն անհետանայ. եթէ նախ երեւելի եպիսկոպոսների պատմութիւնը դասաւորէր անընդհատ կերպով եւ ապա թէ՝ Յոհան եպիսկոպոսի պատմութիւնը կարգէր, արդարեւ՝*

նիւթի, ոճի եւ շարադրութեան տարբերութիւնը եւ կազմութիւնն ակնյայտնի պիտի դարձնէին կցկցումը. դրանից խուսափելու ջանքով ահա՝ խմբագրողը վերցրել է երեւելի եպիսկոպոսների պատմութիւնը, երկու կէս է արել եւ մէջ տեղում դասել է Յոհան եպիսկոպոսի պատմութիւնը Զ գլուխ նախադաս թողնելով եւ Ե կամ Զ՝ հաշուած նաեւ “գլխաւոր աբեղայից„ Գինդի պատմութիւնը, յետ դասելով։

Խմբագրական պայմանների շարքում դասում ենք նաեւ հեղինակի սովորական եւ գործածական ձեւերը, եւ եղանակները, որոնց հակուած է նրա գրիչը։ Այսպէս առաջին երեք դպրութեան մէջ գլուխների սկսուածքներն ի մի խմբելով, եթէ կամենանք մի ընդհանուր կարգաւորութեան ենթարկել, իսկոյն աչքի կը զարնէ մի անվիճելի մեծամասնութիւն գլուխների, որոնք սկսւում են ժամանակ արտայայտող որեւէ խօսքով, որ միշտ անորոշ միտք ունի սակայն — “ապա, յայնմ ժամանակի, այնուհետեւ, ի ժամուն, իբրեւ, յայնժամ„ եւայլն։ Նոյն այդ երեւոյթը նկատելի է ամէն մի դպրութեան համար, առանձին առած։ Այդ խնդրում Զ. դպրութիւնը բացառութիւն է. ԺԶ գլխից է այն կազմուած եւ նրանցից ինն գլուխ միօրաձեւ սկսուածք ունին — “էր„, “եւ էր„։ Այդքանից յետոյ տեսնում ենք, որ առաջին երեք դպրութեան մէջ ընդամէնը հարիւր քսան չորս գլխից միայն մի գլուխ համանման սկսուածք ունի։ — “Եւ էր մարդպետն Հայր այր չար եւ ծանրաբարոյիւք„

(Դ. ԺԴ։) Այնուհետեւ դիտելով Զ. դպրութեան "Էր" սկսուածք ունեցող գլուխները — այն է՝ Բ, Ե, Զ, ԺԱ, ԺԲ, ԺԳ, ԺԴ, ԺԵ — տեսնում ենք որ բոլորը մտնում են առաջին ընդհանուր վերնագրի տակ, բացառապէս՝ երեւելի եպիսկոպոսների պատմութիւնն հաղորդող հատուածի մասերն են։

Խմբագրականին է պատկանում եւ վերնագրերի կազմութիւնը. մինչ Ա, Բ, Ը եւ ԺԶ գլուխներն ընդարձակ վերնագրեր ունին, կազմուած 8, 5 եւ 3 տողերից, մնացած գլուխները մի չորուցամաք կազմութիւն ունին — "յաղագս (այս անուն) եպիսկոպոսին"։ Ինչից է առաջացել այս չորս գէր եւ 12 վտիտ վերնագրերի վիճակը. ուշադիր լինելով՝ տեսնում ենք, որ չորս գէր վերնագրերը չորս մատենագրական նշխարներից մնացորդներ են, իսկ 12 վտիտ վերնագրերից տասն առաջին ընդհանուր վերնագրի մասն են, եւ երկուսն երկրորդ ընդհանուր վերնագրի։ Այդ մեկնութեամբ չորս գէր վերնագրերը յուշարձաններ են չորուցամաք կրկնուող 12 վերնագրերի շարայարութեան մէջ, չորս մատենագրական նշխարների իրար կցման։

## 3.

Զ. Դպրութեան բովանդակութիւնն երկու մասի է բաժանում. առաջին գլուխը քաղաքական պատմութեան է նայում, իսկ Բ—ԺԶ — եկեղեցական պատմութեան։ Առաջին գլխի բովանդակութիւնը մենք թողնում ենք քննելու Ղազարի յառաջաբանի քննութեան կից, որ նշա-

նակութիւն ունի մեզ հետաքրքրող խնդրի համար։ Այստեղ դիտենք վերջին 15 գլուխները։

Երկրորդ ընդհանուր վերնագրի տակ մտնող գլուխները — Ը, Թ եւ Ժ — աւանդութիւններ են հաղորդում ամն Յոհան եպիսկոպոսի մասին. այդ երեք գլուխը մենք կանխում ենք յիշել, որովհետեւ ոչ միայն նրանք, իբրեւ անարժան եպիսկոպոսի պատմութիւնը, խորթ են երեւելի եպիսկոպոսներին յիշատակող գլուխների շարքի մէջ տեղ, այլ եւ նրանց մէջ ոճն եւ մտքերի դասաւորութիւնը միանգամայն օտար է երեւելի եպիսկոպոսների մասին պատմող գլուխներից։ Ը—Ժ գլուխների մէջ ոճը ժողովրդական պարզութիւն եւ մաքրութիւն է արտայայտում. մտքերը սեղմուած են, բազմաթիւ յապաւումներ ունին եւ այնու ամենայնիւ դիւրալուր են եւ հասկանալի. ոչ միայն իմաստի, այլ եւ բառերի կրկնութիւն չունին, իսկ խօսակցական եղանակն առանձին կենդանութիւն է տալիս պատմուածքին։ Ահա մի քանի օրինակ. — "Եւ շուր ի վէգ եկեալ, յամառէր այրն". "իսկ այրն յամառեալ ի վերայ ձիոյն, չառնոյր յանձն տալ." "ոչ գիտեմ զաղմուկս յորում ընթանեցայ." "ապա բռնաբար յետն հանելոյ զձին եւ զայրն արձակեաց." "գնացող" (արագընթաց)։ Ը գլխի հատուածը "Ապա այրն թէ ոչ կամօք — Եւ արձակէր զայրն վաղվաղակի յիւրմէ" մի տրամախօսութիւն է կնոջ եւ մարդու, մարդու եւ Յոհանի մէջ։ Առաջին 13 տողի մէջ Յոհան անունը կամ եպիսկոպոս

խօսքը ոչ մի անգամ չի յիշուած, չնայած որ այր եւ կին նրա մասին են խօսում։ Կինն — «ո՛չ դու երեխայ էիր եւ չէիր մկրտեալ», այրն — «ապշեցոյց, չետ յիշել եւ ոչ ես յիշեցի զայդ ասել ցնա. զիս երէց արար եւ զձին սանձաւ թամբաւ առ եւ անց»։ Ո՞վ է ապշեցնողը, ո՞վ է «նա»ն, ո՞վ է երէց անողը, ձին յափշտակողը — այդ մասին կինը մարդուց ոչինչ է լսած, բայց այնու ամենայնիւ խօսում է եպիսկոպոսի մասին։ Այս սեղմումը սակայն մտքի պարզութեան չի խանգարում, հասկանալի է ընթերցողի համար, մութ ոչինչ չկայ։ Եւ այդ ձեւը կամ արտայայտութեան եղանակը որքան արուեստական շարադրութեան մէջ զանցառութիւն պիտի նկատուէր, նոյնքան գեղջուկ լեզուին, ռամկականին ընտել եւ յատուկ է, մինչեւ իսկ առանձնայատուկ է։

Ը—Ժ գլուխները վերոյիշեալ յատկութիւններով — ժողովրդական ոգւով եւ ոճով — իրարից անբաժան, մէկը միւսի կտորն են հանդիսանում, մի ամբողջութիւն են ներկայացընում. այդ յատկութիւններով նրանք մի եւ նոյն ժամանակ օտարանում են երեւելի եպիսկոպոսների մասին պատմող գլուխներից, որոնք դասուած են առաջ եւ յետ։ Վերջիններիս մէջ կենդանի նկարագիր եւ ժողովրդական ոգի որոնելու ապարդիւն ջանք ունինք, եւ ընդհակառակն՝ որքան կ՚ուզէք, բառերի կրկնութիւններ կը գտնէք նրանց մէջ։ Խիստ չէ բնաւ եթէ ասենք, որ նոյն եւ մի նախադասութեան խօս-

քերը տարբեր դասաւորելով կազմուած են նրանցից իւրաքանչիւրը. այսպէս՝ բոլոր եկեղեցականներն էին “այր քրիստոնեայ եւ քրիստոնէամիտ„ (Դ, ԺԱ, ԺԵ,) “արժանի անուանի երեւելի„ (Է, ԺԲ, ԺԳ, ԺԴ,) եւ “ճշմարիտ„ (Է, ԺԱ.) բոլորն առաջնորդում էին ժողովրդին “ըստ կամացն Աստուծոյ, ի ճանապարհն Աստուծոյ, զամենայն աւուրս կենաց իւրեանց„ (Բ, Ե, Զ, ԺԱ, ԺԲ, ԺԳ, ԺԴ, ԺԵ:) Այս կրկնութիւններին կցուած են եպիսկոպոսի անունը, ում եղբայր եւ որդին լինելը, եւ այն միջավայրի յիշատակութիւնը՝ ուր նա հովուել է, մի խօսքով՝ յատուկ անուններ, եւ այդ եղանակով ստացուել է Գ—Է եւ ԺԱ—ԺԵ գլուխներից իւրաքանչիւրը: Եթէ նկատենք նաեւ, որ այդ գլուխները կազմուած են մեծ մասամբ չորսից մինչեւ ութ եւ տասը տողից, այն ժամանակ նրանց մէջ աւելի քան այդ կրկնուող բառերն ուրիշ բան անհնար է գտնել: Ահա այդ արուեստական կազմութեամբ պէտք է բացատրել այն հանգամանքը, որ ամբողջ այդ գլուխների փոխարէն եթէ ունենայինք այսօր միայն եպիսկոպոսների անուանացուցակը, յատուկ անուններով միասին, այն ժամանակ եւս կ՚արտայայտուէր այդ գլուխների պատմական միտքը, միակ տարբերութեամբ, այն է՝ որ 12 գլխի փոխարէն կ՚ունենայինք 12 տող:

Պէտք է նկատել, որ ընդունուած է Փաւստոսի պատմութեան մէջ պատահած կրկնութիւնները ժողովրդական — առասպելական աղբիւրից

մնացած համարել։ Բայց մեր վերոյիշեալ նկատողութեան թելադրութեամբ Զ. դպրութեան կըրկնութիւնները ժողովրդական-առասպելական ոչինչ չեն բովանդակում. Նոյն իսկ անհնար է եպիսկոպոսների գոյութեան մասին այն հետաքրքրութիւնը վերագրել ժողովրդին, որի արդիւնքը նկատէինք Զ. դպրութեան չոր ու ցամաք կրկնութիւնները։ Ուրեմն էլ ինչ ծագում ունին, ինչ աղբիւրից են բղխում Զ. դպրութեան Բ—Է եւ ԺԱ—ԺԵ գլուխները — ահա էական հարցը մեզի համար առաջիկայում։

## 4.

Փաւստոսի պատմութեան մէջ, բաց ի Զ. դպրութիւնից, կան գլուխների երկու խումբեր, որոնց մէջ կրկնութիւններն առանձին նշանակութիւն ունին մեզ համար. դոքա են 1) Ե. դպր. Ը—ԺԹ եւ 2) Դ. դպր. ԻԶ—ԽԳ եւ ԽԵ—ԽԹ։

Առաջին խումբը — Ե. դպր. Ը—ԺԹ — համեմատելով Զ. Դպր. հետ, տարբերութիւնը հանդիսանում է միայն բովանդակութեան մէջ։ Ե. դպր. Ը—ԺԹ Մուշեղ զօրավարի մասին են պատմում, իսկ Զ. դպր. գլուխները՝ եպիսկոպոսների։ Մնացած բոլոր պայմաններով, որոնք սահմանում են գրչի ստեղծագործելու պրոցէսը, նոյն են նրանք։ Այլաբանօրէն ասելով, Զ. եւ Ե. դպրութեանց կրկնութիւնները հանդիսանում են մի եւ նոյն նկարչի ձեռքով, վրձինով եւ քիմիական բաղադրութեանց արդիւնքով, մի եւ նոյն ճաշա-

կով ու ճարտարութեան չափով ստեղծագործուած երկու պատկեր, որոնք տեղաւորուած են մի եւ նոյն սրահի հանդիպակաց պատերի վրայ՝ միատեսակ շրջանակի կտորների մէջ հագցրած։

Նախ՝ Ե. դպր. Ը—ԺԹ ունին մի ընդհանուր վերնագիր, որ տեղ ունի Ը գլխի ճակատին, բայց նայում է ըստ իմաստի Ը—ԺԹ գլուխների բովանդակութեան միանգամից. ահա այդ վերնագիրը — "Յաղագս Թէ զիարդ լռեաց պատերազմն ի կողմանցն Պարսից, ապա սկսաւ սպարապետն Մուշեղ ոգորել ընդ այնոսիկ՝ որք միանգամ ապստամբեցին ի Թագաւորէն Հայոց. զբազում կոյս կոյս հարկանէր մեծաւ պատերազմաւ„։ Երկրորդ՝ բաց ի ընդհանուր վերնագրից, նրան կցուած է այլեւս՝ յատկապէս Ը գլխի համար մի երկրորդ վերնագիր, որ սկսւում է "Նախ վասն„ խօսքով եւ է — "Նախ վասն տան Թագաւորին Հայոց՝ որ յԱտրպատականն էր։„ Երրորդ՝ միայն Ըրդ գլխի ճակատին ընդհանուր վերնագիրն է, որ ընդարձակ է, հինգ տողից է բաղկանում. մնացած Թ—ԺԹ գլուխներն ունին չոր ու ցամաք երեք կամ չորս խօսքից կազմուած վերնագրեր՝ այս ձեւով — "յաղագս (այս անուն) գաւառին։„ Չորրորդ՝ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխները կազմուած են յաղթողի եւ պարտուողի անուններից եւ մի քանի խօսքերից, որ՝ առանց բացառութեան, իւրաքանչիւր գլխի մէջ կրկնւում են — "հարկանէր, առնոյր աւերէր, գերէր, ի մնացորդացն առնոյր պատանդս, զընակիչս ի հարկի ծառայութեան

կացուցանէր„: Հինգերորդ՝ Ը—ԺԹ գլուխները իրենք իսկ շատ աղքատ բովանդակութիւն ունին — Նրանցից 6 չորս թերի տողից է կազմուած, իսկ 7 մերթ եօթ մերթ ութ եւ տասն տողից:

Այս բոլոր առանձնայատկութիւնները նոյն են, ինչ որ մենք քիչ առաջ տեսանք Զ. դպր. առաջին ընդհանուր վերնագրի գլուխները քննելու ժամանակ, եւ այդ պատճառով՝ անպակաս կերպով յարմարւում է այստեղ կրկնել մեր այն եզրակացութիւնը, որ Զ. դպր. կրկնութեանց համար յայտնել ենք. այսինքն՝ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների փոխարէն եթէ ունենայինք միայն այն գաւառների անուանացուցակը յատուկ անուններով միասին, որոնց Մուշեղ հնազանդութեան հարկադրեց, այն դէպքում եւս կ'արտայայտուէր այդ գլուխների պատմական միտքը, միակ տարբերութեամբ՝ այն է որ 12 գլխի փոխարէն կ'ունենայինք 12 տող:

Բայց Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութեանց մէջ կապը, նմանութիւնն եւ մանաւանդ ժողովրդական ոգու բացակայութիւնն աւելի առ աչօք անելու համար, դեռ հարկաւոր է դիտել Դ. դպր. ԻԶ—ԽԳ եւ ԽԵ—ԽԹ կրկնութիւնները, որոնք 30ամեայ պատերազմի ճակատամարտներն են պատմում առասպելական իմաստով եւ ոճով: Ժողովրդական պարզութիւնն այնտեղ իւրաքանչիւր մի կրկնութեան հետ մեր երեւակայութեան մի մի կենդանի պատկեր, աշխոյժ դիպուածի յիշողութիւն է վերընծայում. ժողովուրդն այդ կրկնութիւնների մէջ հանդէս է

բերում Պարսից առասպելական ոյժերը Հայոց ոտքի տակ ջարդուած, իսկ զօրավարներին — փոքրահասակ Վասակի առաջ ծնկուն դարձած։ Միանգամ “Վասակ հարկանէր սատակէր թափէր զշարդ„ (ԻԷ.) միւս անգամ “կազմէր պատրաստէր... հասանէր անկանէր նախ զԳումանդ Շապուհն սպանանէր եւ ապա ընդ ցիրն ասպատակ սփռեալ հոյացիքն, զամենայն զօրս Պարսից կոտորեալ անմի արարեալ սպառեցին„ (ԼԱ.) մի այլ տեղ “ելանէր ի գիշերի արկանէր ի ներքս ի ղակիշն ի հետիոտս սուսեր ի ձեռն տասն հազարաւ ընտիր ընտիր արամբք„ (ԼԶ.) այլուր “անկանէր ի գիշերի ի վերայ ղակշին Պարսից եւ հանէր ընդ սուր առհասարակ զամենեսեան եւ սպանանէր զգնդապետն ի մէջ բանակին„ (ԽԳ.) այլուր “դէմ յանդիման մեծաւ բռնութեամբ միմեանց յարձակէին եւ յաղթահարէր զզօրսն Պարսից գունդն Հայաստան. սատակէին եւ ոչ մի ի նոցանէն ոչ ապրեցուցանէր„ (ԽԱ) եւ այլն։ Այսպիսի են ժողովրդական կրկնութիւնները, որոնց մէջ իսկական առասպելական ոգին անհնար է չտեսնել. այս կրկնութիւնների հանդէպ ահա՝ Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութիւններն են, որ՝ իբրեւ մատենագրական նշխար, ժողովրդական ոգին եւ առասպելական տարրը հեգնելու նշանակութիւն ունին միայն։ Զուրկ չէ հետաքրքիր լինելուց տեսնել նոյն իսկ այն խօսքի նոյնանիշները, որով յարձակման կամ յաղթութեան առաջին գործողութիւնն է արտայայտուած. Դ. դպր. կրկնութեանց մէջ. —

«կազմէր, պատրաստէր, խաղաց գնաց, մղէր պատերազմ, ելանէր ի գիշերի, դիմեաց, գայր հասանէր, զառաջեօք անգանէր, խաղայր անկանէր, ճակատէր, պատահէր, կանխէր ելանէր, ելանէր ի դիմի հարկանէր, գնային հասանէին, դարանամուտ լինէր, ընդդէմ յարձակէին» եւայլն։

Մենք իրաւունք ունինք նոյն եւ մի իմաստի այս բոլոր բազմատեսակ արտայայտութիւնն, աշխոյժ նկարագիրը սպասել տեսնել նաեւ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների մէջ, որովհետեւ, ըստ հեղինակի, Մուշեղ այնքան քաջ էր, որքան եւ Վասակ, որպէս զի ժողովրդի ուշադրութեան արժանանար. բայց զուր է այդ յոյսը. Դ. դպր. կրկնութիւնը ոչ մի նմանութիւն չունի Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութիւնների հետ. վերջիններս կեղծ կրկնութիւն են, եթէ որպէս թոյլ կը տրուի բացատրել այն տարբերութիւնը, որ մինչեւ այժմ աշխատեցինք պարզել համեմատութեամբ Դ. դպր. կրկնութեան։ Ի վերջոյ յիշենք, որ Դ. դպր. կրկնութիւնը տարբերւում է կեղծ կրկնութիւններից նաեւ նրանով, որ Դ. դպր. ԻԴ գլուխը մի ընդհանուր վերնագիր չունի եւ ապա առաջին գլուխը տարբեր վերնագիր չունի, վերնագրերն ընդարձակ են եւ ի վերջոյ գլուխների ընդարձակութեան մէջ չի նկատւում որ եւ է համեմատութիւն. կեղծ կրկնութեանց ամէնէն ընդարձակ գլուխներն ունին այնքան տող, որքան ունին Դ. դպր. ամէնափոքր գլուխները, այն է 8—10 տող։

Ամփոփելով, ի վերջոյ երկու կէտի ենք յանկում. 1) որ Դ. դպր. կրկնութիւնը մի կողմից իսկ միւս կողմից կեղծ կրկնութիւնները (Ե. եւ Զ. դպր.) հակադրական առընչութիւն ունին ոճով եւ ոգւով. 2) Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութիւնները միատեսակ կերպով կեղծ կազմութիւն ունին, ոճով եւ ոգւով յար եւ նման մէկմէկու: Արդ՝ թողնելով Դ. դպր. կրկնութեան խնդիրը քննել ներկայ էջերից դուրս, առ այժմ դիտենք Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութիւնները — թէ ինչ հանգամանքի մէջ են ստեղծուած նրանք:

5.

Քիչ առաջ նկատեցինք, որ պատմական միտքն ամենեւին չէր տուժել, եթէ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների փոխարէն ունենայինք մի անուանացուցակ՝ ի հպատակութիւն հարկադրուած իշխանների կամ գաւառների համար: Եւ արդարեւ, Ե. դպր. Ը—ԺԹ տաղտկալի եւ կեղծ կրկնութիւններն ստեղծելու համար հիմք ծառայած անուանացուցակը մնացել է նոյն ինքն Փաւստոսի պատմութեան էջերում, մի գլխի մէջ, Դ. դպր. Ծի մէջ: — Ահա այդ ցուցակն ըստ կարգին.

1. Բդեաշխն Աղձնեաց.
2. » Նոշիրական
3. » Մահկերտան
4. » Նիհորական
5. » Դասընտրէին
6. » Գուգարաց
7. Տէրն Ձորայ գաւառին
8. » Կողքայ.
9. » Գարդմանաձորոյ.
10. Գաւառն Արձախայ.
11. » Ցմորեաց.
12. Աշխարհն Կորդեաց.
13. Տէրն գաւառին Կորդուաց.
14. Աշխարհն Ատրպատական
15. » Մարաց
16. » Կազբից
17. Սաղամուտ Տէրն Անձտեայ
18. Իշխանն Մեծի Ծոփաց:

Այս նախարարութիւնները, 34 տարի պատերազմ մղելուց յետոյ ընդդէմ Պարսից՝ Վասակի առաջնորդութեամբ, այնուհետեւ "ձանձրացան, պարտեցան, եւ սկսան սորսորել գնալ ի բանակէն Հայոց Թագաւորին, թողին զեւրեանց արքայն Արշակ:„ Այս նախարարութիւններին ահա, իբրեւ Արշակից ու Վասակից խորդացած արիւնակիցների, Մուշեղ հանդիսանում է ի հնազանդութիւն հարկադրած այն կրկնութիւնների մէջ, որ տեսանք Ե. դպր. Ը—ԺԹի մէջ: Ուրիշ խօսքով Ե. դպր. Ը—ԺԹ հանդիսանում են իբրեւ ծնունդ ի ծոցոյ Դ. դպր. Ծ գլխի: — Արդ դիտենք նրանց մէջ առընչութիւնը — որպէս զի պարզել կարողանանք թէ՝ նոյն եւ մի հեղինակի, ժամանակի եւ գրական շրջանի գո՞րծք են նոքա, թէ՝ տարբերւում են ժամանակով հեղինակով եւ գրական շրջանով իրարից:

30ամեայ պատերազմի առասպելը, որ քիչ առաջ դիտեցինք իբրեւ Դ. դպր. կրկնութիւն, ռա՛միկի ստեղծածն է եւ Դ. դպր. Ծ գլուխն այդ առասպելի վերջաբանն է, ուր պատմուած է Արշակի եւ նախարարների մէջ գժտութիւնը: Ապստամբ նախարարներին յիշելու ժամանակ, ինչպէս եւ սպասելի է, ռամիկ հեղինակը ոչ մի կարգ չի պահպանել ո՛չ բարձական եւ ո՛չ աշխարհագրական. Թերեւս նախարարների հեղինակութեան չափով պատշաճ համարուի մեկնել, կամ գաւառների մեծութեան եւ բազմամարդութեան շնորհիւ է, որ նախադասուած է մէկ գաւառ եւ յետ է դասուած միւսը: Մենք աւե-

լորդ ենք համարում, խուսափելով խիստ ընդարձակուելուց, առաջ բերել համեմատական կարգով մօտաւոր շրջանի նախարարական եւ բարձական ցուցակները, որ հաղորդում են մատենագրական փշրանքների մէջ, բարձական աւագութիւնը խանգարուած ցոյց տալու համար Դ. դպր. Ծի մէջ. բաւական է դիտել, որ հոն վեց անգամ յիշւում են “գաւառ„ եւ “աշխարհ„, որոնք՝ ի հարկէ, բարձական կարգի անուշադիր թողնուած լինելն են վկայում հեղինակ ռամիկի կողմից։ Ըստ աշխարհագրականի նորից չի պահպանուած որ եւ է կարգ. հարաւում Աղձնիքը յիշելուց յետոյ, ապա գալիս է հիւսիսը՝ Գուգարք եւ Գարդման, ապա կրկին հարաւում Կորդուք, Ատրպատական, Մարաստան, ապա կրկին հիւսիսում Կազբիք, եւ անմիջապէս Անձիթ ու Ծոփք, որոնք Աղձնիքի կարգում պէտք էր յիշել ըստ աշխարհագրական դիրքի։

Դառնալով Ե. դպր. Ը—ԺԹ գլուխներին, նոյն ապստամբ նախարարների ցուցակն այդ գլուխների մէջ մի խիստ խնամքով կարգաւորութեան ենթարկուած վիճակի մէջ է, նրանց մէջ պահպանուած է միանգամայն թէ պատմական եւ թէ աշխարհագրական ճշմարիտ կարգը։ Ահա այդ վիճակը.

1. գլխ. Ը — Թագաւորութիւն Ատրպատական աշխարհի.
2. „ Թ — Աշխարհ Նոշիրական.
3. գլխ. Ժ — Գաւառ Կորդուք.
4. „ Ժ — Գաւառ Կորդիք.
5. „ Ժ — Գաւառ Տմորիք.

6. գլխ. ԺԱ — Կողմանք Մարաց.
7. „ ԺԲ — Երկիր Արձախայ.
8. „ ԺԳ — Երկիր Աղուանից.
9. „ ԺԴ — Երկիր Կասպից (= Փայտակարան.)
10. գլխ. ԺԵ — Արքայն Վրաց եւ բդեշխն Գուգարաց.
11. „ ԺԶ — Բդեշխն Աղձնեաց.
12. „ ԺԷ — Մեծ Ծոփք.
13. „ ԺԸ — Անգեղ տուն.
14. „ ԺԹ — Անձիտ.

*Այս ցուցակի մէջ երեք կարգի են ենթարկուած ապստամբող իշխանները. Նախ՝ Հարաւ-արեւելեան եւ Հարաւային գաւառներ — որ են առաջին վեց կարգը, երկրորդ՝ Հիւսիս եւ Հիւսիս-արեւելեան, որ են 7—11, եւ երրորդ՝ արեւմտեան, որ են 12—14: Այս ըստ աշխարհագրական տեղագրութեան: Բայց, բաց ի այդ, պատմական-քաղաքական յայտնի շրջանի բնաւորութիւնն եւս պարզ նկատելի է. Նախ՝ ցուցակի մէջ կարգով յիշուած են Պարսից բաժնի գաւառները, որ են թիւ 1—9, եւ ապա Յունաց բաժնի, կամ սահմանագծի գաւառները, որ են թիւ 10—14: Այս վերյիշեալ՝ կրկնակի իմաստով տեսակաւորութիւնը նկատելուց յետոյ, հազիւ թէ մեր կարծիքով էլ աւելի արդարամիտ վկայութեան պահանջ լինի ընդունելու համար Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների արուեստական կազմութիւնը:*[1] *Այդ*

[1] Ե. դպր. Ը—ԺԹի կարգաւորութիւնը հիմք չունինք վերագրելու Մուշեղի յարձակման խակ ծրագրի. Նախ՝ Մուշեղի այդ յաղթութեանց քննութիւնը մեզ իրաւունք չէ տալիս իրական ընդունելու. այդ առաջիկայում: Երկրորդ՝ յընդհանուրս ի դէպ ինկատել, որ այդպիսի ծրագիրներ իրական նկա-

գլուխների մէջ Նրանց հեղինակը հանդիսանում է միանգամայն աշխարհագրագէտ եւ պատմագէտ, հակառակ Գ. դպր. Ծի ռամիկ հեղինակի տգիտութեան, եւ իւր գրական հմտութեան շնորհիւ ստեղծած է հանդիսանում 12 գլուխ պատմութիւն, կարգի տակ դնելով Գ. դպր. Ծի մէջ անկարգ վիճակի մէջ հաղորդուած անուանացուցակը. իսկ որովհետեւ աւելի քան այդ անուանացուցակն ուրիշ նիւթ չի ունեցել նա, ուստի մի քանի դարձուածներ կրկնելով իւրաքանչիւր գլխի մէջ, հեղինակը տուել է այդ գլուխներին ժողովրդական առասպելական բնաւորութիւնը։

Ահա այն վիճակը, որի մէջ ծագած է ներկայանում կեղծ կրկնութիւններից առաջինը։

---

տելու համար՝ հարկաւոր է կանխաւ երկու խնդիր ուսումնասիրել. 1) ռազմագիտութիւնը Հայոց մէջ այս կամ այն դարում. 2) Հայաստանի աշխարհագրական վիճակն ըստ ռազմագիտութեան։ Այս խնդիրները ցայժմ յարուցուած չեն. ներկայումս գոյութիւն չունի նաեւ մասնագիտական մի քարտէզ, որ ցոյց տար Հին Հայաստանի հաղորդակցութեան ճանապարհները, բանակատեղերը, քաղաքական կեդրոնները եւն։ Երրորդ՝ ինչ էլ լինի այդ ռազմագիտական արուեստի քննութեան արդիւնքն՝ անհերքելի կը մնայ այն, որ հարաւարեւելեան եւ հարաւային գաւառները՝ Ատրպատականից դէպ ի Ցմորիք նուաճելուց յետոյ Անձիթ, Աղձնիք, Անգեղտուն եւ Ծոփք արշաւելու դիւրութիւնը թողած՝ ոչ մի յարմարութիւն պիտի չներկայանար հիւսիս անցնիլ — Արցախ, Աղուանք, Վրաստան եւ այնտեղից խաղաղաց լեռների միջով նոր միայն արշաւել արեւմտեան գաւառների վրայ՝ ինչպէս այդ Ե. դպր. Ը–ԺԹ մէջ է ներկայացրած։

## 6.

Ե. դպր. Ը—ԺԹ գլուխները, ըստ նախորդ նկատողութեան, ոչ միայն հետաքրքրութիւն են շարժում իբրեւ սոսկ մատենագրական նշխար, այլ եւ այդ գլուխների միջոցով հարկաւորւում է կանխաւ ծանօթանալ այն հեղինակի հետ, որ կազմել եւ յօրինել է միակերպ խմբագրութեամբ թէ Ե. դպր. Ը—ԺԹ եւ թէ Զ. դպր. կեղծ կրկնութիւնները։ Այդ մտադրութեամբ քիչ պիտի երկարենք Ե. դպր. Ը—ԺԹ գլխոց քննութիւնը։

Ե. դպր. Ը—ԺԹ գլուխները դիտելով, ուշադրութեան արժանի կէտերից մէկը ԺԳ եւ ԺԵ գլուխներն են ներկայանում, որոնց մէջ պատմուած է Աղուանից եւ Վրաց պարտութիւնը, եւ ի հպատակութիւն խոնարհուիլը։ Դ. դպր. Ծի մէջ ո՛չ Աղուանքն եւ ո՛չ Վրաստանը չեն յիշւում ապստամբողների մէջ. այդ քիչ է, Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների մէջ ամենէն ընդարձակը հէնց ԺԳ եւ ԺԵ գլուխներն են, որոնք բաց ի՝ սովորական կրկնուող դարձուածներից դեռ ինչ ինչ յաւելեալ մասեր էլ ունին։ Բաց ի այդ, Դ. դպր. Ծի մէջ ո՛չ մի աշխարհագրական անուն չկայ, որ դուրս մնար Հայաստանից եւ մտնէր Վրաց եւ Աղուանից աշխարհների մէջ՝ Դ. դարում։ Ուրեմն ինչո՛վ մեկնել Վրաստան եւ Աղուանք անունների ներկայութիւնը Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների մէջ։

Մենք որ եւ է օտար խնդրով զբաղուած չէինք լինել, եթէ այդ հետաքրքիր հարցի լու-

ծումը լսէինք Խորենացուն վերագրուած աշխարհագրութեան հեղինակից. լսենք եւ քայլ առ քայլ հետեւենք նրան։

Մեծ Հայքի 15 նահանգներն այսպէս է նա յիշում. “Իէ. Մեծ Հայք... Եւ ունի Մեծ Հայք փոքր աշխարհս (իմա՝ նահանգս) հնգետասան, որ են այսոքիկ... (անունները)։ Արդ կամիմ մանրամասնաբար պատմել թէեւ սակաւ ինչ աշխատեցիմ ի գիր եւ ի քարտէս։„ Այստեղ հեղինակն իւր աշխատելը չեշտել է, որովհետեւ Մեծ Հայքի նկարագիրը գրքերից պիտի հաւաքէր նա եւ խմբագրէր, քանի որ հեղինակի ժամանակ Հին Մեծ Հայքն իւր ամբողջութիւնից զրկուած էր։ Նա այդ հաղորդում է այսպէս — “Փայտակարան յելից կայ Ուտիոյ առ Երասխաւ. գաւառս ունի երկոտասան, ըստ այժմ Ատրպատական ունի։„ Պարզ է այստեղից որ Մեծ Հայքի Փայտակարան նահանգը հեղինակի ժամանակ գոյութիւն չունէր, այդպիսի քաղաքական բաժանմունքն անհետացել էր արդէն եւ Ատրպատական էր կոչւում հեղինակի օրով, համաձայն նոր քաղաքական բաժանման։ Ահա թէ ինչու հին աշխարհագրական վիճակը նկարագրելու համար հեղինակը պարտաւորուած էր աշխատել ի գիր եւ ի քարտէս։

Քաղաքական բաժանման տարբեր վիճակը հեղինակի օրով եւ նրանից առաջ չեշտուած է այլ եւս երեք անգամ։ Իէ պրակի մէջ Մեծ Հայքի 15 նահանգի անուանացուցակը յիշելուց յետոյ՝ երբ նկարագրում է ապա իւրաքան-

չիւր նահանգն առանձին, 11 նահանգ նկարագրում է այնպէս թէ նոքա հեղինակի օրով եւս Հայաստանի մասն էին, իսկ երեք նահանգի մասին աւելացնում է, որ նրանց գաւառներն այս կամ այն դրացի երկիրների մասերն են եւ ուրեմն հեղինակի օրով այդ երեք նահանգներն եւս, ինչպէս Փայտակարանը, գոյութիւն չունէին իբրեւ մեծ Հայքի նահանգներ։ Աղուանքի գաւառները ԻԶ պրակի մէջ, Մեծ Հայքից դուրս վիճակով, յիշելուց յետոյ, հեղինակն ապա ԻԷ պրակի մէջ Հին Հայաստանի Արցախ եւ Ուտի նահանգները նկարագրելու ժամանակ գրում է “Արցախ. գաւառք են ի նմա երկոտասան, զոր Աղուանք ունին.„ “Ուտի. ունի գաւառս, զոր Աղուանք ունին՝ եւթն։„ Համեմատութիւնը ցոյց է տալիս, որ Ուտի եւ Արցախ պատմական նահանգների գաւառները, արդարեւ հեղինակը յիշել է ԻԶ պրակի մէջ՝ նախադաս դիրքով եւ այն խմբագրութեամբ, որ նրանք առանց որ եւ է առարկութեան Աղուանքի գաւառներն են իւր օրով։ Նոյնպէս վարուած է նաեւ Գուգարք Նահանգի գաւառների վերաբերմամբ՝ իբրեւ Մեծ Հայքի Նահանգ՝ պրակ ԻԵի մէջ. նա “ունի գաւառս ինն, զոր Վիրք ունին.„ եւ արդարեւ ԻԵ պրակի մէջ յիշուած են Հին Գուգարքի գաւառները, իբրեւ հեղինակի ժամանակ Վրաստանի գաւառներ։

Աղբանիայի գաւառները հեղինակն երկու մասի է բաժանել — որոնք Կուրի աջ ափին եւ որոնք Կուրի ձախ ափին են ընկնում. աջ ափի

գաւառների մասին աւելացնում է. “Եւ այլ
գաւառս , զորս ի Հայոց հանեալ է Շիկաշէն,
Գարդման, Կողթ, Ջաւէ եւ այլ քսան գաւառ
մինչեւ ցխառնումն Երասխայ ի Կուր գետ (պրակ
ԻԶ:) Բանալով պր. ԻԷ՝ տեսնում ենք, որ “զորս
ի Հայոց հանեալ է„ յիշուած քսան գաւառ-
ները հեղինակը կրկին յիշել է Հին Մեծ Հայքի
Ուտի եւ Արցախ նահանգների մէջ, աւելացնե-
լով “Ուտի ունի գաւառս, զոր Աղուանք ունին՝
եւթն: Արցախ գաւառք են ի սմա երկոտասան,
զոր Աղուանք ունին:„ Կը նշանակէ պր. ԻԶ՝
“զորս ի Հայոց հանեալ է„ խօսքերը չեշտակի
նայում է պր. ԻԷ՝ Արցախ եւ Ուտի նահանգ-
ների գաւառների նկարագրին թէ “զոր Աղուանք
ունին,„ իսկ գաւառների թիւն աննշան տար-
բերութիւն ունի. պր. ԻԵ՝ “ի Հայոց հանեալ„
յիշուած է քսան գաւառ, իսկ պր. ԻԷ՝ “զոր
Աղուանք ունին„ կոչումով են 7+12 գաւառ:

Այսպէս ուրեմն Աղբանիայի եւ Մեծ Հայքի
նկարագիրները՝ Ուտի եւ Արցախ գաւառնե-
րով, բառացի կերպով առընչութեան մէջ են
իրար հետ. մէկը միւսին լրացնում եւ միտք են
տալիս: — Պրակ. ԻԷ՝ հաղորդում է, որ հե-
ղինակի ժամանակ Հին Հայաստանի 20 գաւառն
Աղուանքի մասն էին կազմում, իսկ պրակ ԻԶ՝
այդ 20 գաւառը յիշում է իբրեւ Աղուանքի
սեպհականութիւն՝ “ի Հայոց հանեալ„ գաւ-
առներ:

Արդ աշխարհագրութեան մասին մեզ հար-
կաւոր չափով այսքան երկարելուց յետոյ, տես-

նում ենք, որ Նրա պրակների մէջ կապակցեալ իմաստով քանիցս կրկնուած է եւ հեղինակի կողմից ուղղակի մատնացոյց է եղած Աղուանից եւ Վրաց երկիրների հարաւային սահմանագծի ընդարձակուիլը, ի հաշիւ Հայաստանի հիւսիսային սահմանագծի։

Այժմ դառնալով Ե. դպր. ԺԳ գլխին տեսնում ենք, որ աշխարհագրութեան կապակցեալ եւ շարահիւսեալ պրակների միջից մի հատուած բառացի կերպով ընդօրինակուած է եւ այդու ստեղծուած է Ե. դպր. ԺԳ գլուխը. ահա հանդիպակաց վիճակով այդ հատուածների համեմատութիւնը։

*Մատենագրութիւնք Խորենացւոյ 1865, 606:*

“Աղուանից, այս ինքն է Աղուանք, յելից կողմ Վրաց առ երի Սարմատիոյ առ Կաւկասու մինչեւ ցԿասպից ծովն եւ ցՀայոց սահմանն առ Կուր գետով։ Ունի դաշտս արգաւանդս, քաղաքս եւ բերդս եւ գեղաքաղաքս, գետս բազումս, եղեգունս հզօրս։ Եւ գաւառք են այսոքիկ. Եւնի, Բեխ, Քամբէճան, Շաքէ, Ոստան, Իմարծպան, դաշտ ի Բաղասական. եւ այլ գաւառս ունի ի Հայոց հանեալ ի Շէկաշէն, Գարդման, Կողթ, Ջաւե· եւ այլ փառն գաւառս մինչեւ ցհոսանսն Երասխայ ի Կուր գետ։„

*Փաւստոս, Ե. դպր. ԺԳ:*

Առնէր պատերազմ ընդ երկիրն Աղուանից. հարկանէր զնոսա ի հարուածս անհնարինս։ Եւ թափէր ի նոցանէ բազում գաւառս զոր հատեալ էր նոցա ի նոցանէն. զՈւտի, զՇակաշէն, եւ զՁորն Գարդմանայ, զԿողթ, եւ այլ որ շուրջ էին զնովաւ սահմանք գաւառք։ Եւ զԿուր գետ՝ որպէս եւ յառաջն լեալ էր, ընդ երկիրն Աղուանից եւ ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին. եւ ի գլխաւորացն զբազումս սպանանէին. եւ զմնացորդսն ի հարկի կացուցանէին, եւ պատանդս ի նոցանէ առնուին։

Ե. դպր. ԺԳ-ի «զոր հատեալ էր Նոյա ի Նոյանէն» նշանակում է գաւառներ, որոնք Հայերից խլել էին Աղուանները. այդ տեղեկութիւնը ոչ միայն Փաւստոսի պատմութեան այլ գլուխներից, այլ նոյն իսկ Դ. դպր. Ծ-ից բացակայում, որի վրայից ստեղծուած են Ե. դպր. Ը—ԺԹ գլուխները. այդպէս բացակայում են նաեւ Ե. դպր. ԺԳ-ի Ուտի, Շիկաշէն, Կողթ անունները: Գալով պատմական իմաստին, Ե. դպր. Ե-ի մէջ պատմուած է Աղուանից ջարդուիլը Մուշեղից եւ այդ յաղթութեամբ՝ ինքն ըստ ինքեան Հայոց ձեռքը պիտի անցած լինէին խլուած գաւառները, եթէ այդպիսիք կային: Ուրեմն էլ ինչով է պայմանաւորւում Ե. դպր. ԺԳ գլուխը. նա անկապ է ներկայանում ամբողջ Փաւստոսի պատմութիւնից: Միակ կապը, որ կայ Ե. դպր. ԺԳ-ի եւ Փաւստոսի պատմութեան մէջ Գարդման անուան յիշատակութիւնն է, որ յիշուած է Դ. դպր. Ծ եւ Ե. դպր. ԺԳ-ի մէջ: Այդ անունն ահա առնելով Դ. դպր. Ծ-ից, խմբագրողը մի շարք իմաստներ է ընդօրինակել Աշխարհագրութիւնից: Աղուանք, Ուտի, Շակաշէն եւ Կողթ անունները, որոնք՝ իբրեւ ապստամբող գաւառներ, չեն յիշուած Դ. դպր. Ծ-ի մէջ, ընդօրինակուած են աշխարհագրութիւնից բառացի կերպով, բաց ի այն՝ որ բառացի ոճով ընդօրինակութիւնն անպակաս է այնտեղ: Հակառակ ենթադրութիւնն անել չենք կարող, այսինքն որ Աշխարհագրութեան հեղինակն է իբր ընդօրինակել Փաւստոսի Ե. դպր.

ԺԳից. եւ ահա թէ ինչու. նախ՝ Ե. դպր. ԺԳի մէջ այդպէս է բառացի ընդօրինակութիւնը — “զոր հատեալ էր նոցա ի նոցանէն զՈւտի, զՇակաշէն, զձորն Գարդմանայ, զԿողթ եւ այլ որ շուրջն էին զնովաւ սահմանք գաւառք:„ Այդ հատուածը հաւասար է աշխարհագրութեան տողերին “զորս ի Հայոց հանեալ է Շիկաշէն, Գարդման, Կողթ, Ջաւէ եւ այլ քան գաւառ մինչեւ ցխառնումն Երասխայ ի Կուր գետ:„ Ենթադրելով որ աշխարհագրութեան հեղինակն ընդօրինակելով Ե. դպր. ԺԳից, փոխ առաւ նախ “զորս հանեալ է ի Հայոց„, ապա բաց թողեց Ուտի անունը, ապա ընդօրինակեց Շիկաշէն, Գարդման, Կողթ անունները, ապա մի այլ աղբիւրից առնելով՝ կցեց Ջաւէ անունը, որ Ե. դպր. ԺԳը չունի. ապա չհաւանեց Ե. դպր. ԺԳի ընդհանուր իմաստը — “եւ այլ որ շուրջն էին զնովաւ սահմանք գաւառք„ եւ մի այլ աղբիւրից դրա փոխարէն ընդօրինակեց որոշ իմաստով այս տողերը “եւ այլ քան գաւառ մինչեւ ցխառնումն Երասխայ ի Կուր գետ„: — Այս բոլորն իբրեւ շարադրութիւն անհնար է, թէպէտ մտածել անհնար չէ այդ բոլորը, ի շարս մտացածին շատ այլակերպութեանց: Երկրորդ՝ ըստ իմաստի անհնարութիւն է առաջանում՝ եթէ կամենանք Ե. դպր. ԺԳն աղբիւր նկատել աշխարհագրութեան համար: “Զորս ի Հայոց հանեալ է„ խօսքերով աշխարհագրութեան հեղինակը յիշում է գաւառները՝ իբրեւ հաստատապէս Աղուանքի մասերը, եւ նոյնը կրկնում

է շարունակութեան մէջ Արցախ եւ Ուտի նահանգների նկարագրութեան մէջ, ինչպէս տեսանք վերեւի տողերի մէջ: Աշխարհագրութեան հեղինակն այդ կապակցեալ եւ շարահիւսեալ տեղեկութիւնը հաղորդում է, ամենաշատն ասենք, Երդ դարի վախճանին: Արդ՝ Ե. դպր. ԺԳ-ը, իբրեւ մի դարով նախորդ պատմութիւնը հաղորդող յիշատակարանը. հաղորդում է, որ այն՝ ինչ որ խլուած էր Հայերից, Մուշեղ յետ դարձրեց, եւ այդ հաղորդում է նա բառացի կրկնութեամբ: — Մուշեղի այդ յաղթութիւնն անհնար է իրական ընդունել եւ այն պատճառով, որ Մուշեղից յետոյ պատմութիւնը լռում է այն մասին թէ Աղուանները Հայերից խլել են աշխարհագրութեան յիշած մտքով քսան գաւառ:

Ե. դպր. ԺԳ-ի մէջ “զոր հատեալ էր նոցա ի նոցանէն„ խօսքերը նշանակում են գաւառներ, որոնք խլել էին Աղուանները Հայերից: Այդ խօսքերը հաւասար են ըստ իմաստի աշխարհագրութեան “զորս ի Հայոց հանեալ է„ տողին: Բայց Ե. դպր. ԺԳ-ի “զոր հատեալ էր նոցա ի նոցանէն„ իւր ներկայութեամբ, բաց ի այն որ աշխարհագրութիւնից փոխ առնուած լինելու վիճակի մէջ է՝ ըստ նախորդի, այլ եւ՝ մի այլ հանգամանք է շեշտում: Գ. դպր. Ծ-ի մէջ նախարարների եւ գաւառների ցուցակն առաջ է բերուած իբրեւ Արշակից ձանձրացած, ինքնուրոյնութեան ձգտող իշխանների, ապստամբների: Այդ հիմամբ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների մէջ խմբագրող եւ

յօրինող հեղինակն եւս ամէն անգամ յիշում է “Հարկանէր Մուշեղ (այս անուն գաւառը,) զի եւ նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց„: Այդ բոլորին հակառակ է Ե. դպր. ԺԳ-ի մէջ այս տողը — “Առնէր պատերազմ ընդ երկիրն Աղուանից, հարկանէր զնոսա ի հարուածս անհնարինս եւ թափէր ի նոցանէ բազում գաւառս, զոր հատեալ էր նոցա ի նոցանէն. զՈւտի, զՇակաշէն„ եւն, — ուր լոկ Գարդմանայ տիրոջ, իբրեւ մի ապստամբի՝ հնազանդութիւնը չէ, որ յիշուած է, այլ Աղուանից աշխարհի ոտնձգութիւնն է հաղորդուած. այդ տողերի մէջ Աղուանքը յիշւում է իբր թէ պատերազմ է մղել Հայոց դէմ եւ արդիւնքն եղել է Կուրի աջ ափի գաւառների գրաւումը. եւ Մուշեղն էլ այդ պատճառով պատերազմեց Աղուանից աշխարհի հետ, յետ խլեց գրաւուած յափշտակուած գաւառներն եւ հին սահմանը վերականգնելով Աղուանից զօրութիւնը ճնշեց: Այս բոլորը, որ միանգամայն եւ գլխովին դուրս է Դ. դպր. Ծ գլխից, մեկնում պարզաբանում է գրագէտ եւ պատմագէտ հեղինակը, հակառակ Դ. դպր. Ծ-ի մէջ առասպելական ոգւով եւ ոճով յիշուած լոկ Գարդման գաւառի ապստամբութեան յիշատակութեան: — Տարբեր հեղինակ, տարբեր մատենագրական նշխար — ահա Ե. դպր. ԺԳ-ի եւ Դ. դպր. Ծ-ի համեմատութեան արդիւնքը, որ սակայն հասկանալի է դառնում, երբ աշխարհագրութեան պրակից կատարած փոխառութիւնն աչքի առաջ ունինք այժմ:

Ե. դպր. ԺԵ գլուխն եւս, ուր յիշուած է Վրաց արքայի պարտութիւնը Գուգարաց բդեշխի հետ միայն, մեկնում է նաեւ աշխարհագրութեան ցուցումով՝ թէ Գուգարքի գաւառները Վրաստանի մասերն են. այդ հիմքն ունենալով, Փաւստոսի պատմութեան խմբագրողը փոխանակ Գ. դպր. Ծի Գուգարքի հնազանդութիւնը միայն յիշելու, Ե. դպր. ԺԵի մէջ՝ նաեւ Վրաց արքային ապստամբի վիճակի մէջ ենթադրելով, նկարագրել է նրա պարտութիւնն եւս Մուշեղից։ Ցամենայն դէպս, Ե. դպր. ԺԳ եւ ԺԵ գլուխների մէջ այն՝ ինչ որ վերաբերում է Հայաստանի, Վրաստանի եւ Աղուանից երկրի սահմաններին, շեշտուած է եւ անհնար է հաստատ ասել — Արդեօք Մուշեղի քաջութեան չափը մեծացնելը, թէ՝ Հայաստանի անցեալ սահմանագիծն անխախտ ներկայացնելն է եղած խմբագրողի նպատակը՝ աշխարհագրութեան իմաստին հակառակ, — այդ զանազանել դժուար է, թէպէտ երկու նպատակը միանգամից եւ միասին նկատելն եւս անարդարացի չէ։

7.

Ե. դպր. Ը—ԺԹ առանց բացառութեան վերջանում են "զմնացորդսն նուաճէր եւ ի հարկի կացուցանէր" խօսքերով։ Կից այդ երեւութին, իւրաքանչիւր գլխի մէջ՝ բացառութեամբ Ե. դպր. ԺԸի, յիշուած է, որ Մուշեղ ապստամբած գաւառներից "առնոյր պատանդս"։ Ուրեմն հարկատուութիւնն եւ պատանդն անխռով հպա-

տակութեան համար երկու էական պայմաններ էին: Տեղը չէ այստեղ մանրամասն հետեւել Հայաստանի տիրապետական շրջաններու պատմութեան եւ որոշել թէ որ շրջանին են համաձայնում հարկատուութեան եւ պատանդի այդպիսի խստութիւնը: Ոստիկան խօսքի ներկայութիւնը Ե. դպր. ԺԴ եւ ԺՋի մէջ այդ խնդիրը բաւական պարզում է: Խնդիրն այն է, որ կասպից երկիրն եւ Աղձնեաց բդեշխութիւնը հարկատուութեան եւ պատանդի միջոցներով էլ յուսալի հպատակութիւն ցոյց տալու ճնշումն զգալ չէին կարող, ուստի Մուշեղ այդ երկիրներին խիստ վերաբերուեց եւ բաց ի սովորական հպատակութեան պայմաններից՝ հարկից եւ պատանդից, ոստիկան-վերակացուներ թողեց այնտեղ (Ե. դպր. ԺԴ եւ ԺՋ:) "Եւ անդ ոստիկանս վերակացուս թողոյր", "եւ վերակացուս եւ ոստիկանս յերկրին Աղձնեաց թողուլին":

Ընդհանուրս լուսանցքի յաւելումների մասին կատարուած դիտողութիւններն ի մի ամփոփելուց յետոյ, տեսնում ենք, որ դժուարիմաստ խօսքերն են միշտ, որոնք լուսանցքում բացատրութիւն կամ նոյնանիշ մի այլ խօսք աւելացնելու տեղիք են տուած նախնեաց, եւ այլ կերպ հասկանալ եւ մեկնել միտք էլ չունի: Այդ հիմքով ոստիկան խօսքը, իբրեւ ոչ-հայերէն, լուսանցքի մեկնութիւն չի կարելի ընդունել: Այդ մանաւանդ չի կարելի, նկատելով՝ որ ոստիկան խօսքին կցուած է երկու դէպքում եւս վերակացու խօսքը, որը լուսանցքի յաւելումն

ընդունել թերեւս հնար լինի՝ ոստիկան խօսքը պարզելու նպատակով: Այսպէս՝ ոստիկան խօսքն անկասկած ենթադրւում է հեղինակինն եւ ոչ թէ լուսանցքի յաւելումն է այն: Եւ արդարեւ, այդ հաստատում է մանաւանդ այդ խօսքի երրորդ գործածութեամբ Դ. դպր. ԾՁի մէջ. "Եւ ելին ոստիկանք արքունի հարցանել եթէ իցէ՝ յանձն առցէ պաշտել զօրէնս մոգութեանն՝ ոչ մեռցէ, իսկ նա ոչ առնոյր յանձն, այլ՝ կամեցեալ մեռանել խնդութեամբ վասն Աստուծոյ, երթեալ ի տեղի մահուանն, եւ աղաչեաց զվերակացուն իւրոյ մահուանն, զի թողացուսցեն նմա սակաւ մի կալ յաղօթս": Այստեղ երկու խօսքն էլ ներկայ են, բայց հեռաւոր դիրքով են եւ անկասկած ոստիկան խօսքը հեղինակինն է հանդիսանում: Իսկ եթէ "վերակացու մահուանն" եւ "վերակացու սպանողութեան" (ԾԷ) կամենանք այլ պաշտօնեայք հասկանալ քան նախադրեալ դիրքով գործածուած "ոստիկանք արքունի", ուրեմն կապ չունենանք տեսնել ոստիկան եւ վերակացու խօսքերի մէջ, — այդ դէպքում եւս անխախտ կը մնայ մեր նկատողութիւնը, որ ոստիկան խօսքը բուն հեղինակի, այն է Ե. դպր. Ը—ԺԹ գլուխներուն խմբագրողի, գործածածն է եւ լուսանցքի մեկնութիւն չէ:

Գալով Ե. դպր. ԺԴ եւ ԺՁ գլուխներին, ուր գործ են ածուած "ոստիկանք վերակացուք", նրանց նշանակութիւնը կրկնակի է. բաց ի այն որ Ե. դպր. Ը—ԺԹ յօրինուած գլուխների մէջ

են մնում, այլ եւ այդ երկու գլուխները յօրինման ժամանակաշրջանի ամենավաղ սահմանը ոստիկան խօսքի ներկայութեամբ են սահմանում։

## 8.

Ե. դպր. Ը—ԺԹ գլուխներն ըստ բովանդակութեան թերի են՝ համեմատութեամբ Գ. դպր. Ծի նրանով, որ չունին Նիհորական, Մակերտան եւ Գասընտրէին իշխանների մասին որ եւ է յիշատակութիւն, մինչ Գ. դպր. Ծի մէջ նրանք յիշուած են ըստ այսմ. “Նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. Նախ բդեաշխն Աղձնեաց եւ Նոշիրական բդեաշխն եւ Մահկերտանն եւ Նիհորականն եւ Գասընտրէին եւ ամենայն նախարարութիւն Աղձնեաց„։ Այս հատուածի մէջ հինգ բդեշխներ են յիշուած. իսկ պարունակութեան մէջ այլ եւս յիշուած է Գուգարաց բդեշխը։ Այս բոլոր անուններից Ե. դպր. Ը—ԺԹ գլուխները՝ միայն Աղձնեաց, Նոշիրական եւ Գուգարաց բդեշխների մասին են հաղորդում, իսկ Մահկերտան, Նիհորական եւ Գասընտրէին չեն հաղորդւում ի հպատակութիւն հնազանդուած։

Բդեշխների թուի եւ նրանց կալուածքի մասին բանասէրներն անհամաձայն կարծիքներ են յայտնել. Հ. Ղ. Վ. Ալիշան չորս սահմանակալութիւնը միացնում է չորս բդեշխութեան հետ, որով բդեշխութիւնը փոփոխուող տիտղոս է դառնում, որովհետեւ սահմանակալներն անփոփոխ չէին մնում։ Խորենացու աշխարհագրու-

թեան մէջ Ասորեստան եւ Արուեստան նոյն են, իսկ Ագաթանգեղոս երկրորդ սահմանակալին յիշում է Ասորեստանեայց, իսկ երրորդին Արուեստական երկրում։ Ըստ Հ. Ալիշանի “Նոր Շիրական սահմանակալ թուի իշխանն Անգեղ տան. (Այրարատ 422,) իսկ Փաւստոս Ե. դպր. Թ եւ ԺԲ որիշ որիշ են յիշատակում Նոշիրական երկիրն եւ Անգեղ տունն ապստամբող երկիրների կարգում։ Հ. Ղ. Վ. Ինճիճեան Հնախօսութիւն Բ. 74 բդեշխութիւն է կոչում Աղձնեաց, Նոշիրական, Մահկերտան եւ Նիհորական երկիրները, համաձայն Փաւստոսի Դ. դպր. Ծի, այնու ամենայնիւ բաց է թողել նա Դ. դպր. Ծից Դասընտրէին անունը, իսկ հինգերորդ բդեշխութիւն է ճանաչել Գուգարքը։ Այս բոլորի համաձայն պէտք էր բդեշխներ անուանել Աղձնեաց Նոշիրական, Մահկերտան, Դասընտրէին, Գուգարաց եւ Մամիկոնեան (Ասողիկ Բ. 2) իշխաններին, դեռ չհաշուած այն նախարարութիւնները, որոնք կուսակալութեամբ պէտք է բդեշխ կոչուէին. այդպիսի են Նոշիրական, Կորդուաց, Ատրպատականի, Արցախի, Աղուանից, Կասպից, Վրաց, Ծոփաց, Անգեղտան եւ Անձտայ տէրերը (Ագաթ. եւ իւր բազմադ. գաղտնիք, էջ 169 եւ 241, Հ. Բ. Վ. Սարգսեան,) որոնք իբրեւ քառաթիւ կողմնակալ կուսակալներ՝ զանազան ժամանակներում յիշուած են տարբեր յիշատակարանների մէջ։

Սուղ են տեղեկութիւնները, որոնցով կարելի լինէր բդեշխութեանց մասին, առանց վե-

բդեշխաւլ շփոթութիւնների, որ եւ է եզրակացութեան յանգել: Բաց ի սուղ տեղեկութիւններից, Ագաթանգեղոսի ԺԻԶ պրակի մէջ չորս գահերէց իշխանները բդեշխ են կոչուած, որի շնորհիւ եւ, ըստ իս, պէտք է առաջացած նկատել շփոթութիւնների մի նշանաւոր մասը. բայց այդ ԺԻԶ պրակն ինքը խիստ տարակուսելի է ըստ պատմականի եւ մատենագրականի. Նա՝ ուղղակի կրկնութիւն է ԺԻԱ պրակի վրայից՝ մի նպատակաւոր պատմութիւն ստեղծելու միտումով, ըստ Հ. Բ. Սարգսեանի (նոյն 240—1,) եւ այդ պատճառով մեկուսի պիտի մնայ այն մեր նկատողութեան համար: Իսկ մնացած պատմական ցուցումներն ի մի խմբելով դժուար չէ տեսնել, որ բդեշխ էին միայն Աղձնեաց եւ Գուգարաց իշխաններն եւ այլ — ոչ ոք: Բդեշխները մտել են գահերէցների շարքը — “մեծ իշխանն Աղձնեաց, որ անուանեալ կոչէր բդեաշխն. որ էր մի ի չորից, գահերէց բարձերէց տաճարին արքունի:„ (Փաւստոս, Գ. դպր. Թ:) Բդեշխները մտել են նաեւ կողմնակալների շարքը (Խորեն. պատմ. Բ. պրակ, Է, Ը, ՁԵ, Գ. պր. Ջ) եւն, Բայց միշտ եւ բոլոր դէպքերում թէ առանձին եւ թէ խմբի մէջ բդեշխ տիտղոսը միմիայն Գուգարաց եւ Աղձնեաց իշխաններն ունին որիշ որիշ յիշատակութեամբ՝ կից Բագրատունի, Ամատունի, Ռշտունի, Սիսական, Կադմեան, Կորդուաց, Անգեղտան իշխանների, որոնք յիշւում են պատմիչներից իբրեւ կողմնակալներ “իշխան, նահապետ, Տէր„ տիտղոսներով (Փաւստոս Դ. դպր. Ծ, Ե. դպր. Ը—ԺԹ, Գ.

դպր. Թ. եւն եւն.) բայց բնաւ բդեշխ չէն կոչուած նոքա։ Առանձին ուշադրութեան արժանի են Փաւստոս Գ. դպր. Թ եւ Խորեն. Գ. պր. Զ։ Այդտեղ Փաւստոս յիշում է Աղձնեաց բդեշխին եւ այլ եւս աւելացնում է, որ նա էր միաժամանակ նաեւ չորս գահերէցներից մէկը. կը նշանակէ՝ ըստ այդ խմբագրութեան, բդեշխը նոյնութիւն չէր ներկայացնում գահերէցի համեմատութեամբ եւ արդարեւ Խորեն. Գ. պր. Զի մէջ չորս առաջնակարգ նախարարների կարգում բացակայում է Աղձնեաց բդեշխը. ուրեմն կողմնակալութիւնը մի առաւելութիւն էր, որ՝ բդեշխին թողած, սոսկ իշխանական տոհմերի կարող էր անցնիլ, արդարեւ նոյն տեղն Ամատունին, Ռշտունին եւ Բագրատունին յիշուած են կողմնակալներ, իսկ չորրորդ թիւը լրացնում է Գուգարքը։ Այդտեղ եւս միայն Գուգարքի իշխանն է կոչուած բդեշխ, իսկ միւսները իրենց սեպհական տոհմական տիտղոսով — Բագրատունին՝ Ասպետ, միւսները՝ նահապետ։ Լոյսի պէս պարզ է, որ նահապետը կարող էր կողմնակալ դառնալ առանց բդեշխ կոչուելու եւ դառնալու, նոյնպէս եւ ասպետը. այլ եւ՝ որ բդեշխը կարող էր կողմնակալ չլինել, ինչպէս Խորեն. Գ. պր. Զի մէջ Աղձնեաց բդեշխն է բացակայում։ Ուրեմն այլ էր բդեշխութիւնն եւ այլ էր կողմնակալութիւնը. առաջինն անկապուտ, տոհմական տիտղոս էր միմիայն Գուգարքի եւ Աղձնիքի նահանգապետների համար. իսկ երկրորդի առաւելութեան կարող էին հասնել կամ մերժուել նրանից թէ

բդեշխը, թէ ասպետը, եւ թէ նահապետը։ Մի աւելորդ օրինակ յիշենք. Սիւնեաց տէրն երբեք բդեշխ չէ յիշուած պատմութեան մէջ, թէպէտ կողմնակալ՝ շատ անգամ. բայց Աղձնեաց Բակուր բդեշխին սպանելուց յետոյ, երբ երկրի կառավարութիւնը յանձնուեց վարել Վաղինակ Ցիւնուն՝ խնամական կապի շնորհիւ, այդ պատճառով, բացառապէս այդ դէպքում Վաղինակ Սիւնին բդեշխ է կոչուած Փաւստոս Գ. դպր. Թ գլխում։ Սակայն այդ տիտղոսը նա չունէր առաջ եւ ստացաւ այն ոչ իբրեւ Սիւնեաց պետ, այլ իբրեւ Աղձնիքի ժամանակաւոր կառավարիչ. իսկ Ցիւնիքը բնաւ բդեշխութիւն չդարձաւ. Աղձնիքն էր որ բդեշխութիւն էր եւ շարունակուեց նոյնը մնալ Բակուրի որդու ժառանգութեամբ։

Այսպէս պատմական սուղ տեղեկութիւնը դիտելուց յետոյ, յանգում ենք այն եզրակացութեան, որ Հայոց նախարարութիւններից միմիայն Աղձնեաց եւ Գուգարաց իշխանները բդեշխներ էին. որ գահակալների եւ կողմնակալների թւում երկու բդեշխի յիշուիլը բնաւ հիմք չէ աւելի բդեշխներ ճանաչել Հայաստանի կառավարչական կեանքում, քան Աղձնեաց եւ Գուգարաց իշխանները։

Արդ՝ ինչպէս հաշտեցնել մեր այս եզրակացութիւնը Փաւստոսի Դ. դպր. Ծի հետ, ուր յիշուած են իբրեւ բդեշխներ՝ նաեւ Նոշիրական, Մահկերտան, Նիհորական եւ Դասըն-

տրէյին, — որոնք բացայայտ կոչումով մտել են նաեւ Ինճիճեանի եւ Էմինի գրչի տակ մասամբ [1]:

**9.**

"Նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. Նախ բդեաշխն Աղձնեաց եւ Նորշիրական բդեաշխն եւ Մահկերտանն եւ Նիհորականն եւ Դասընտրէին. եւ ամենայն նախարարութիւն Աղձնեաց եւ զօրն եւ տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ եւ չոգան կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ եւ պարիսպ ածէին ի Հայոց կուսէ՝ որ Զորայն կոչեն; դրունս դնէին. եւ զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց: Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն" եւայլն (Դ. դպր. Ծ:)

Այս ընդարձակ հատուածը սկսւում է Աղձնեաց բդեշխի յիշատակութեամբ եւ վերջ-

[1] Մ. Էմին Խորեն. պատմ. ռուս. թարգմ. ծանօթ 164 մէջ նկատել է, որ բդեշխ էին Հայոց մէջ լոկ Աղձնեաց եւ Գուգարաց իշխանները: Բայց երեք տարի յետոյ, 1861 թ., Վարդան Մեծի տեղ. պատմ, ռուս. թարգմ. մէջ ծանօթ. 75 (երկուսն էլ տպ. Մոսկուա) թարգմանիչն իւր նկատողութիւնը հերքել է. „Титло это носили правители провинцій: Гугаровъ, Ахцник, Нор-Ширакана, Кордука, которые назывались также великими князьми." Կրկնենք՝ 1) որ Կորդուքի իշխանն երբ եւ իցէ բդեշխ չէ կոչուած. 2) Նորշիրականը Փաւստոսի Ծ գլխի մէջ կից է Մահկերտան, Նիհորական եւ Դասընտրէին անուններին. 3) Գահերէցութիւնը բդեշխներին յատուկ պատիւ նկատելով, չորսից շատ աւելի բդեշխներ կ'ունենանք, որովհետեւ գահերէցութիւնն անհաստատ պատիւ էր մէկ տոհմից միւսին անցնող. 4) Ագաթանգեղոսի պատմութեան ՃԻԶ պրակն անստոյգ է եւ կասկածելի՝ իբրեւ մատենագրական նշխար:

անում է Գուգարաց բդեշխի անունով։ Բաց ի այդ, այդ հատուածից եթէ բաց թողենք Նոր-շիրական, Մահկերտան, Նիհորական եւ Դասս-ընտրէին անունները, մնացածն Աղձնեաց բդեշխի, Նախարարութեան, զօրքի եւ տոհմի ապստամ-բութեան պատմութիւնն է. յիշեալ չորս անունն է որ միջանկեալ գիրքով խանգարում են այդ կապակցեալ միտքը. ինչո՞ւ են յիշուած այդ անուններն այդ անյարմար գիրքով։

Վերոյիշեալ հատուածն այլայլուած է. Դասսընտրէին անունը առաջ է եկել "դասս ընտիր էին„ խօսքերի միացումով, ինչպէս այդ հաղորդւում է Ներսիսեան Դպրոցի ձեռագրի մէջ, որ այդտեղ ունի հետեւեալ ընթերցանու-թիւնը. "Բայց այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեշխն Աղձնեաց, եւ Նորշիրական բդեշխն։ Եւ Մահակերտանն եւ Նիհորականն եւ դասս ընտիր էին սոքայ։ Եւ ամենայն Նախարարութիւնն Աղձնեաց։ Եւ զօրքն եւ տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամ-բեցին յարքայէն Հայոց. եւ չոգան կացին ա-ռաջի արքային Պարսից Շապհոյ։ Եւ պարիսպ ածին ի Հայոց կուսէ որ Զորան կոչէին եւ դրունս դնէին անդ. եւ զատուցին զեւրեանց աշխարհն ի Հայոց„։ Համաձայն այս ընթերցանութեան, մերժւում է Դասսընտրէին ձեւն անուն ենթա-դրել. հասկանալի եղանակով Նա փոխարինել է "դասս ընտիր էին„ խօսքերին եւ այդ պատ-ճառով է, որ Դասսընտրէին հանգիսանում է մի անուն՝ բդեշխի, որ այդ միակ անգամն է՝ որ

փաւստոսի Դ. դպր. Ծ ի մէջ յիշուած է մատենագրութեան մէջ։

Այս ընթերցանութեամբ, որ ընտիր կոչել չենք դանդաղում, Նորշիրական, Մահակերտան եւ Նիհորական՝ բդեշխներ են կոչուած։ Բայց մի եւ նոյն ժամանակ նոքա երկրի ընտիր դասն են առաջադրուած։ Իբրեւ բդեշխներ, այդ երեք անուններից միայն առաջինը պատահում է հին մատենագրութեան մէջ մի քանի անգամ, բայց անորոշ է նաեւ թէ ո՛ր երկիրներն էին բռնում նրանցից թէ՛ մէկն եւ թէ՛ միւսը. մի խօսքով բդեշխ տիտղոսով այդ անունների պատմական եւ աշխարհագրական ճշդութիւնն սահմանել անհնար է։ Մնում է դիտել նրանց ընտիր դասն լինելու վիճակը, եւ թելադրուած ենք այդ անունները նոյնինքն Աղձնեաց երկրի ընտիր դասը ճանաչելու ըստ այսմ. — Նախ եւ յառաջ նկատենք, որ Հայաստանում ընտիր դասն համարուելու չափ "Նորշիրական, Մահկերտան, եւ Նիհորական՝„ ուրոյն ուրոյն բդեշխներ չեն եղած. պատմութիւնը լռում է այդպիսեաց մասին, ինչպէս վերոյիշեալ նկատողութեան մէջ ստուգաբանել ենք։ Երկրորդ՝ Դ. դպր. Ծ ի առաջադրուած հատուածը սկսւում եւ վերջանում է Աղձնիքի ապստամբութեան նկարագրով, ուրեմն եւ նրա յիշած ընտիր դասն, ըստ շարադրութեան արուեստի կանոնների, Աղձնիքի մէջ պէտք է ենթադրել, եւ ոչ թէ այլեւայլ բդեշխներ, որոնք դուրս լինելով հանդերձ Աղձնիքից, յիշուէին վերջինիս ապստամբութեան նկարագրի

մէջ մի միջանկեալ դիրքով, եւ իմաստ խան-
գարող վիճակով։ Երրորդ՝ առաջադրեալ հա-
տուածը՝ Աղձնիքի ապստամբութիւնը յիշելուց
յետոյ, իբրեւ նոր ապստամբութիւն Գուգարաց
բդեշխին յիշելու համար այս խմբագրականն
ունի․ “Եւ յետ ․որ․ Գուգարաց բդեաշխն„․
ուրեմն եւ կանխադիր հատուածը, ըստ իմաստի,
ամբողջութիւն պէտք է նկատել՝ միակ Աղձնիքի
վերաբերմամբ։ Եւ չորրորդ՝ թէպէտ Նոշիրական,
Մահկերտան եւ Նիհորական յիշուած են ոչ
իբրեւ բդեշխութեան ստորադրեալ սոսկ նախա-
րարներ, այլ իբրեւ մի մի բդեշխ նոյն ինքն
Աղձնեաց բդեշխութեան մէջ, սակայն այդ հան-
գամանքն էլ նշանակութիւն չունի այնքան, որ
նրա առարկութեամբ ծանրանալ կարելի լինի․
բդեշխութեան մէջ տոհմական բդեշխին ստո-
րադրուած նախարարները կամ իշխանները մի մի
բդեշխներ կոչուելու հանգամանքը մի տեսակ
գործածական ձեւ է, որը գործ է ածել Թէ
փաւստոսի Դ․ դպր․ Ծ ի հեղինակն եւ Թէ
Յովհաննէս կաթողիկոս, որի տողերի մէջ կաս-
կածից դուրս պարզութեամբ եւ բացայայտու-
թեամբ Աղձնեաց աշխարհում մի քանի բդեշխ-
ների տիրապետութիւն է հաղորդուած․ “Մեծ
իշխանն Իսմայելեան՝ Ահմատ, որ տիրեալ ունէր
զՄիջագետս Ասորոց մինչեւ ցՊաղեստին, ձեռն-
ակալ արարեալ զփեսայացեալն Արծրունեաց
Ապլմուխրայ, որ ի ծածուկ ունէր զհաւատս քրիս-
տոնէութեան եւ փոխանակ բդեշխացն պայա-
զատէր ղաշխարհն Աղձնեաց՝ ի բանդի զնա եդեալ՝

յինքն գրաւէր ղսեպհականութիւն տանն եւ զբնակիչս Սիմ լերինն (1853, Մոսկուա, 96)։

Այսպէս, Ներսիսեան Դպրոցի ձեռագրի շնորհիւ վերականգնելով Գ. դպր. Ծի ճիշդ ընթերցանութիւնը, մնում է ենթադրել այդ ընթերցանութեան վրայ հիմնուած, որ խմբագրողի ձեռքին Փաւստոսի պատմութեան բնագիրն եւս անսխալ էր նոյն հատուածում։ Իսկ ամէն կասկածից դուրս է, որ Գ. դպր. Ծի եւ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների մէջ տարաձայնութիւն չկայ Նիհորական եւ Մահքրտան անունների խնդրում, որովհետեւ Ե. դպր. ԺԶ գլխի մէջ միանգամ եւ ընդհանուր իմաստով յիշուած է Աղձնեաց բդեշխութիւնն եւ նրա հնազանդութեան պատմութիւնը։[1]

## 10.

Կից Նախորդ Նկատողութեան, որի մէջ ջանացինք ցոյց տալ Գ. դպր. Ծի եւ Ե. դպր. Ը—ԺԹ գլուխների առընչութիւնը խանգարող պայմանների անհարազատութիւնը, այստեղ՝ կամենում ենք նոյն մտքով մի փոքր երկարել. այս

---

1 Ներս. Դպր. ձեռագիրը (Ցուցակ Ներս. Հոգ. Ազգ. Դպր. 1893, Տփխիս, Nr. 30) ունի այլեւայլ առաւելութիւններ եւ աննկատելի մնացած մի փոքրիկ յիշատակարան։ Այս Ձեռագրի մասին երկար հաշիւ պիտի տանք, երբ խօսք կ'ունենանք Փաւստոսի պատմութեան բնագրի մասին։ Ձեռագիրն անուշադիր է մնացած այն բոլոր Նկատողութիւնների համար, որոնք վերջին տարիներս յայտնել են Դպրանոցի բանասէր ուսուցիչները Փաւստոսի պատմութեան վերաբերեալ։

յանձն ենք առնում ի վնաս մեր առաջադրեալ բուն խնդրի՝ մանաւանդ Դ. դպր. Ծ ի հարցը միանգամ ընդ միշտ սպառելու նպատակով։

Հայոց նախարարական ցուցակների մէջ՝ թէ բարձական եւ թէ պատահական առիթներով յիշուած վիճակով, շատ անգամ միեւնոյն նախարարութիւնը 2 կամ 3 անգամ է յիշուած միեւնոյն ցուցակի մէջ՝ զանազան բարձով։ Այդ կրկնութիւնն առաջանում է նրանից, որ տարբեր բարձ ու զինուորական ոյժ ունենալու իրաւունք է յատկացրած եղել միեւնոյն նախարարութեան զանազան գաւառատէրերին։ Այդ պայմանի շնորհիւ, Փաւստոսի Դ. դպր. Ծ ի արտայայտութեամբ, “ընտիր դասն„ ճանաչուելու վիճակի մէջ են հանդիսանում այդ կրկնուող նախարարները ցուցակների մէջ։ Հասկանալի է, որ այդ կարգի իշխանները, իբրեւ նահապետից յետոյ առաջինը, երկրորդն եւ նոյն իսկ երրորդը, յականէ յանուանէ յիշուէին՝ համաձայն պատմական այս կամ այն շրջանի մէջ վայելած արտօնութեան, երբեմն նախարարական անուանացուցակների մէջ, եւ երբեմն որ եւ է ապստամբական շարժման մէջ, ինչպէս այդ տեսնում ենք Փաւստոսի Դ. դպր. Ծ ի մէջ Աղձնեաց աշխարհի Նիհորական, Մահքրտան եւ Նոշիրական իշխանների յիշատակութեամբ։

Բայց քանի մի պատմական ցուցակներ ունինք, որոնք դրդիչ են հանդիսանում կարծելու, թէ Աղձնեաց աշխարհն երբեմն յիշուած է Նոշիրական անունով. մանաւանդ այդ կարծիքը

հաստատող ցուցմունքների՝ տարբեր ժամանակի եւ յիշատակարանների մէջ հաղորդուած լինելն է, որով ուշադրութեան արժանի են նոքա։ 1) Ագաթ. պատմութեան ԺԻ պրակը նշանակում է Ս. Գրիգորի քարոզութեան ընդարձակութիւնն եւ այդտեղ հարաւային սահմանը յիշուած է այս կարգով. Մծբին, Առուէք, Նորշիրական կոր-դէք, Մարք „ եւայլն. սահմանումը սկսած է այդ հատուածի մէջ հարաւ-արեւմտեան ծայրից եւ շարունակուած է դէպ ի արեւելք։ Արդ՝ Ասո-րիքի եւ Կորդիքի միջավայրում եւ նրանց սահ-մանակից մի երկիր կայ միայն, Աղձնեաց աշ-խարհը, որից հարաւ Ս. Գրիգորի քարոզութեան սահմանը չի ընդարձակուած։ Բաց ի այդ, Ս. Գրիգորի քարոզութեան սահմանը Մծբինից գծելով դէպի Կորդիք, ԺԻ պրակի մէջ լռութիւն է պահուած Աղձնիքի մասին, որ այդ գծի վրայ է ընկնում եւ բուն սահման է այդ մօքով. այդ լռութիւնը սակայն ըստ ձեւի է, իսկ ըստ իմաստի Նոր շիրական անունը լրացնում է սոյն ենթա-դրեալ պակասը։ — 2) Սեբէոսի պատմութեան Ա. դպր. մէջ Արշակ Փոքր կոչեցեալ պարթեւ-ազնի (= Վաղարշակ) տիրապետած երկրի սահ-մանները յիշուած են կարգով — հիւսիսից ա-րեւելք, արեւելքից հարաւ, հարաւից արեւ-մուտք — . . . “յհիւսիսոյ կողմանէ ի լեառն մեծ Կովկաս, որ ձգի ընդ կողմանս արեւելից, եւ ան-ցանէ առ սահմանաւն առ ամուր աշխարհաւն Մարաց, եւ հասանէ ի լեառն Զագրոս, եւ ան-ցանէ առ Նոր շիրոյ երկրաւն „ ։

Նոր շիրակ անուան այս սովորական գործածութիւնը՝ նոյն եւ մի Աղձնիքի համար հասկանալով, այնուհետեւ, արդարեւ, հասկանալի է դառնում սոյն թիւրիմացութիւնը, որի մէջ ընկել է Փաւստոսի խմբագրողը։ Դ. դպր. Ծ՛ի մէջ յիշուած է Նոշիրական անունն այս խմբագրութեամբ. “Նախ բդեաշխն Աղձնեաց, եւ Նոշիրական Բդեաշխն, եւ Մահկերտանն, եւ Նիհորականն„ եւն. այս խմբագրութեամբ “ընտիր դասն„ իշխանութիւններից Նոշիրականը, որ ինքեան կրկնութիւն է նախորդ Աղձնիքի, ուրոյն եւ հրապարակաձայն բդեշխ է յիշուած, իսկ Մահկերտան եւ Նիհորական իշխանութիւնները չունին այդ խմբագրութիւնը. այդ պատճառով Ե. դպր. Ը—ԺԹ խմբագրող հեղինակը Նոշիրականի հնազանդութիւնն առանձին մի գլխի մէջ է պատմել, իսկ Մահկերտան եւ Նիհորական անունները բաց է թողել։ — Այդ այդպէս է, հարկաւ, եթէ ընդունինք որ Նորշիրակ անունը նոյնութիւն է Աղձնիք անուան, ըստ Ագաթանգեղոսի եւ Սեբէոսի ցուցումների. սակայն այդ ցուցումներն եթէ անբաւարար գտնենք նոյնութիւն նկատելու համար Աղձնիք եւ Նոր շիրակ անունները, այն դէպքում եւս Մահկերտան եւ Նիհորական իշխանութիւնների կարգում Նոր շիրակը, միայն մէկը մնալով “ընտիր դասն„ ներկայացողների մէջ, Աղձնիք աշխարհի մի՛ թերեւս ընդարձակ եւ հարաւային սահմանագծի մասնիկը հասկանալու վիճակով կրկին Ե. դպր. Ը—ԺԹ հեղինակի թիւրիմացութեան ենթար-

կուած կը հանդիսանայ Ե. դպր. Թ գլխի մէջ, քանի որ Ե. դպր. ԺԶ գլուխը նայում է Աղձնեաց ամբողջ աշխարհի հպատակութեան[1]։

1 Մահկերտան անունը բաց ի Փաւստոսի Դ. դպր. Ծ ից ուրիշ տեղ չի պատահել մեզ. բայց թիւրիմացութիւն առեղծելու չափ հիմք է շնորհում Ագաթանգեղոսի ՃԻ պրակի մէջ Մահքրտան անունը։ "Եւ այսպէս ընդ ամենայն երկիրն Հայոց„ հատուածի մէջ Ս. Գրիգորի քարոզած երկիրները հեղինակը սահմանագծում է երկու ուղղութեամբ. 1) սկսելով հիւսիս-արեւմտեան ծայրից նշանակում է հիւսիսային սահմաններն եւ հասնում է մինչեւ հիւսիս-արեւելք — "Սատաղացոց քաղաք, Խաղտիք, Կաղարճք„, մինչեւ Մազքութները, որ է Ալանաց դուռը եւ Կասպից երկիրները. 2) սկսելով հարաւ-արեւմտեան ծայրից շարունակում է հարաւային սահմանները — "Ամդացոց քաղաք, Մծբին, Ասորիք, Նորշիրական, Կորդիք, Մարք, Ատրպատական եւ Մազքութք„։ Ուրեմն երկու կիսաշրջանով է սահմանուած — հիւսիսայինն եւ հարաւայինն, եւ երկու կիսաշրջաններն միացած են արեւելքում Մազքութների սահմանագծի վրայ. բայց երկրորդ անգամ Մազքութ անունը Վենետիկի հրատարակութեան մէջ ունի "տունն Մահքրտան„ ձեւը, որ նմանահնչութեամբ մօտ է "Մահկերտան„ ձեւին։ Սակայն այդ սխալ է. 1709 հրատարակութիւնը ցոյց է տալիս, որ կան եղել ձեռագրեր, որոնք ըստ իմաստի, ճիշդ ընթերցանութիւնն են ունեցած. 1709 հրատարակութեան մէջ գտնում ենք "տունն Մազքթաց„՝ փոխանակ "տունն Մահքրտան„ ձեւի։ Յիշենք, բաց ի այդ, որ ինքնին անսովոր գործածութիւն է "տունն Մահքրտան„ ձեւը, ուր կրկնուած է երկիցս "տուն„. այդ հետեւողութեամբ մտածելով՝ տեսնում ենք, որ ընդհակառակն նախնեաց երկերի մէջ բնաւ գործածական չէ եւ չէ պատահում "տունն Անգեղտան„ եւ այլ նմանօրինակութեանց ձեւեր։

Ի վերջոյ նկատենք, որ՝ Աղձնեաց աշխարհի մէջ ամփոփուած լինելու շնորհիւ Թերբեւս, Նիհորական, Մահկերտան (Մահակերտան՝ ըստ ձեռագրի) եւ նոյն իսկ Նորշիրական (ըստ օրին. Նոշիրական) անունները անծանօթ են. առաջին երկուսը բաց ի Փաւստոսի Դ. դպր. Ծ ից մի այլ անգամ մատենագրութեան մէջ չեն պատահում, իսկ եր-

# 11.

Նախորդ նկատողութիւնների իմաստն ամփոփելով, տեսնում ենք, որ 1) Փաւստոսի պատմութեան մէջ կեղծիքաբար յօրինուած՝ Ե. եւ Զ. դպրութեանց կրկնութիւններն անալօգիական փայլերով նոյն են ըստ խմբագրականի; եւ 2) Ե. դպրութեան կեղծ կրկնութիւնը սկիզբն ստացել է նախորդ դպրութիւնից:

Այժմ՝ դառնալով երկրորդ կեղծ կրկնութեան այն է Զ. դպրութեան Բ-ԺԵի, տեսնում ենք որ Զ. դպրութեան մէջ չկայ մի անուանացուցակ, որի վրայից Զ. դպրութեան կրկնութեան կազմուած լինելն երեւար. ընդհակառակն Գ—Ե. դպրութեանց մէջ հեղինակը խօյս է տուել ամէն յարմար առիթներում եկեղեցականների անուանացուցակը յիշելուց, կաթողիկոսացնելու համար կեսարիա ուղղուած խմբերի, Ներսէսի Բիւզանդիոն ուղեւորուելու եւ Ներսէսի գումարած ազգային ժողովների առիթներում: Միեւնոյն ժամանակ այդ երեւոյթին ուղիղ հակադրում է հետեւեալը. հեղինակն ուշք է դարձրել եւ յիշել է միշտ նախարարական անուանացուցակները յարմար առիթներում: Զ. դպրութեան մէջ այդ հետեւողութեամբ սպասելի էր տեսնել նշանաւոր նախարարների անուանացուցակը;

---

բորդ անունը հանդիպում է նաեւ Ագաթանգեղոսի եւ Սեբէոսի պատմութեանց մէջ միայն, թէպէտ Բդեշխութիւն են կոչուած Փաւստոսի մէջ նոքա: “Նիհորական„ ոչ իբրեւ տեղի անուն, այլ իբրեւ անձի անուն գործածական էր նախնեաց մէջ (Այրարատ 125ա.) բայց այդ հանգամանքը մեզ չյաջողուեց ծառայեցնել ներկայ խնդրի լուծման:

մանաւանդ Արշակունեաց իշխանութեան վատթարանալու պատմական դիպուածով։ Այդպէս ուրեմն՝ տարբեր հարցասիրութիւն են ունեցել ներկայ խնդրում Զ. դպրութեան եւ նախորդ դպրութեանց մէջ նրանց հեղինակները։ Այնու ամենայնիւ նախորդ դպրութեանց մէջ չորս նուագով յիշուած են այս ու այն էջում անուններ, որոնք նոյնանում են Զ. դպրութեան եկեղեցականներից մի քանիսի անուան, ինչպէս են Փաւստոս, Առոստոմ, Տիրիկ եւ Տրդատ։ Այդ հանգամանքից, սակայն, Զ. դպրութեան եւ նախորդ դպրութեանց մէջ կապը չէ, որ նկատելի է, այլ անհարազատութիւնն եւ օտարութիւնը, ըստ հետեւեալի։

1. Զ. դպրութեան անուններն իրենց հայացի ձեւով միանգամայն եւ միաբանութեամբ տարբերում են նախորդ պատմութիւնից։ Է., է., .. մասնիկները Գ—Ե. դպրութեանց մէջ սովորական են եւ ամէն քայլում հանդիպում են. օտարաձեւ են այնտեղ ոչ միայն օտար անունները, այլ եւս հայացրած անուններն են օտարաձեւ, որպիսիք են Գրիգորիս, Վրթանէս, Արիստակէս, Թադէոս. այդ երեւոյթն ու վիճակը մի յոյն նախագաղափար է յիշեցնում Փաւստոսի պատմութեան համար[1]։ Զ. դպրութեան մէջ հակառակ երեւոյթն ենք տեսնում. այստեղ հայաձեւ են ոչ միայն հայ անունները, այլ եւ

[1] Հ. Բ. Վ. Սարգսեան այդ երեւոյթը հիմք առնելով, հռչակել է արդէն Փաւստոսի պատմութեան հայացումն ի յունէ (Ագաթ. եւ իւր բազմադ. գաղտնիքը, էջ 298)։

օտար անունները՝ Զաւէն, Ասպուրակ, Զորթ, Զորթուաս, Յոհան, Արտիթ, Առաստոմ եւայլն։ Զ. դպրութեան մէջ ա, է մասնիկ ունին միայն այն անունները, որոնք հայերէնում այլակերպ գործածութիւն եւս չունին, օրինակ՝ Ներսէս, Մովսէս, Կիրակոս, Փաւստոս եւ Ալբիանոս։

Բայց մասնաւորապէս ուշադրութիւն են գրաւում երեք անուն, որ ունին նախորդ դպրութեանց մէջ Ռաստոմ, Տիրանամ, Տրդած ձեւերը, իսկ Զ. դպրութեան մէջ — Առաստոմ, Տիրիկ եւ Տրդատ ձեւերը։ Աւելի բացայայտ չէր կարող արդարեւ վկայել Զ. դպրութեան հեղինակը, որ մի օտար մատենագրական նշխար է Զ. դպրութիւնը, ուր նոյն եւ մի անձինք այլաձեւ անուններ ունին քան նախորդ պատմութեան մէջ։ Բայց այս անգամ եւս Զ. դպրութեան մէջ հայացած վիճակ ունի անունս Առաստոմ, բաց ի այն որ տարբեր ձեւի մէջ է նա նախորդ դպրութեան համեմատութեամբ. Հայ լեզուի մէջ քիչ անուն կայ որ ռ եւ ր տառերով սկսուածք ունենայ. այդպիսի անունները գործածութեան մէջ են շնորհիւ օտար ազդեցութեան. ըստ Լակարտի նաեւ յունարէն լեզուն չունի այդ սկսուածքով անուններ, որից երեւում է թէ ասորի ծագում ունին այդպիսի անունները։ Հայերէնում այդ անուններին նախադրւում է ը, ու, ա — Ըռըստամ, Ուռուս, Արիստակէս. այդ մասնիկները գեղջուկի եւ գրականութեան մէջ տարբերւում են, բայց միշտ անբաժան են մնում ռ եւ ր առաջին տառից։

Այս բոլորի հանդէպ տեսնում ենք, որ պատմութեան ասորահնչիւն ձեւը՝ Ռաստոմ — ըստ Ներս. Դպր. ձեռագրի՝ Ռըստոմ, Զ. դպրութեան մէջ Առոստոմ է դարձած, ուի նախադրութեամբ. հայացած է այն՝ նման Զ. դպրութեան բոլոր հայացած անուններին։

2. Իբրեւ ամբողջութիւն՝ փաւստոսի պատմութիւնը չէ ներկայացնում ցուցումներ, որով հնարաւոր լինէր այդ ամբողջութեան ընթացքում միակ հեղինակի ներկայութիւնը ճանաչել եւ ընդունել. ընդհակառակն՝ անպակաս են ցուցումները որոնք տարբեր հեղինակների ներկայութիւնն են մատնում. այդպիսի ցուցումներ տեսել ենք գործքիս նախընթաց էջերում. այստեղ եկեղեցականների անուանց քննութեան առիթով այդպիսի ցուցումներից մէկն աւելի ընդարձակ մտքով նոյնն է վկայում։

Նախորդ Գ—Ե. դպրութեանց մէջ հեղինակը նշանաւոր եկեղեցականներին յիշելու դէպքերում, առաջին անգամ բնորոշում է եկեղեցականի ով եւ ինչ լինելն եւ ապա երբ երկրորդ անգամ առիթ ունի յիշել նոյն անձին, հեղինակը մերթ ընթերցողին յիշեցնում է թէ դա այն անձն է՝ որի մասին վերեւ պատմել է, մերթ եւ յաճախ լռութեամբ է անցնում նրա մասին, ենթադրելով որ ընթերցողին ծանօթ է նախորդ պատմութիւնից։ — Դանիէլի մասին Գ. դպր. ԺԴի մէջ պատմելուց յետոյ, կրկին յիշելու առիթներում, զ. օր. Ե. դպր. ԻԵի մէջ, աւելացնում է "Եւ էին սոքա երկոքին լեալ

աշակերտք սրբոյն Դանիէլի Մեծի՝ զոր վերագոյն յիշեցաք„. եւ հետեւեալ ԻԶ եւ ԻԷ գլուխների մէջ Դանիէլին հեղինակը յիշել է՝ այլ եւս առանց այդպիսի ծանուցման։ — Փաւստոս եպիսկոպոսը յիշուած է Դ. դպր. Գի եւ Ե. դպր. ԻԴի մէջ. երկրորդ անգամ Փաւստոսի յիշատակութիւնը տեղի ունի առանց կոչման, իբրեւ ծանօթ մի անձի որ յայտնի է ընթերցողին նախորդ դպրութիւնից իբրեւ ծերունի եւ իբրեւ Ներսէսին ձեռնադրող։ Ահա այդ հատուածները հանդիպակաց։

| Դ. դպր. Գ. | Ե. դպր. ԻԴ: |
|---|---|
| Ետ հրաման եւ կոչեցին զծերունի եպիսկոպոսն, որում անուն էր Փաւստոս եւ տայր զնա ձեռնադրել ի սարկաւագութիւն։ | Եւ առեալ զմարմին սրբոյն Ներսիսի զայրն Աստուծոյ պաշտօնեայք եկեղեցւոյն, եւ Փաւստոս եպիսկոպոս եւ պաշտօնէիցն գլխաւոր՝ Տրդատ, ...տարան ի Թիլն աւան։ |

Այստեղ ուշադրութեան արժանի է եւ այն, որ մինչ Տրդատ, իբրեւ նոր անձն, իւր լրիւ կոչումով է, Փաւստոս նրան կից յիշուած է ընթերցողին ծանօթ վիճակի մէջ։

Արդ՝ արտայայտութեան այդ եղանակը չէ շարունակուած Զ. դպրութեան մէջ, ուր յիշուած են նախորդ դպրութիւններից յայտնի անձինք — Փաւստոս, Տիրիկ, Առոստոմ, Դանիէլ եւ Տրդատ։ Զ. դպր. Եի մէջ ընթերցողին Փաւստոս եպիսկոպոսի հետ ծանօթացնելու համար, հեղինակն երկար յիշում է Թելական կոչուող եպիսկոպոսների նշանակութիւնը, նրանց

պաշտօնն ու դիրքը, այդու մի նոր անձնաւորութեան մասին պատմող է հանդիսանում հեղինակը։ Դանիէլի յիշատակութեան մէջ, Զ. դպր. Ը, մինչեւ իսկ Դանիէլի ժամանակն անյայտ է ենթադրուած ընթերցողին. "Սա աշակերտեալ մեծի Դանիէլին՝ որ էրն յամս Տիրանայ արքայի։" Իբր թէ Տիրանի եւ Դանիէլի ժամանակակից լինելն ընթերցողը չգիտէ։ Աւելի բացարձակ է օտարութիւնը Զ. դպր. ԺԶի մէջ. այդտեղ հեղինակը ստորագծում է Տրդատի անցեալը թէ ում ժամանակակից էր եւ ինչ պաշտօն ունէր երբեմն. պաշտօնը նոյն իսկ այլաձեւ խօսքերի մէջ է հագցրած քան նախորդ դպրութեան մէջ է (պաշտօնէից գլխաւոր = սարկաւագապետ)։ Այս բոլոր դէպքերում, ինչպէս Փաւստոսի եւ Դանիէլի, նոյնպէս եւ այստեղ Տրդատի յիշատակութեանց մէջ չի պատահում ոչ մի անգամ այն սովորական եւ նախորդ պատմութեան հեղինակի գործածած ձեւը թէ՝ "զոր վերագոյն յիշեցաք". չի էլ լռութեամբ անցած այդ անձանց մասին, իբրեւ նախորդ դպրութեանց մէջ ծանօթների. այլ միշտ Զ. դպրութեան մէջ նրանք հանդիսանում են իբր թէ առաջին անգամ եւ ընթերցողին անծանօթ վիճակի մէջ։

3. Չնչին, ըստ երեւութին՝ աննշան տարբերութիւններն եւս անպակաս են։ Ներսէսի ընտրութեան միջոցին Փաւստոս յիշում է ծերունի (Դ. դպր. Գ), իսկ Զ. դպրութեան մէջ՝ 30 տարի անց՝ ըստ աւանդութեան, ամենեւին չի յիշում թէ նա ծերունի էր. ընդհակառակն՝

այդ երեւութին հանդէպ Զ. դպրութեան մէջ Արտիթ յիշուած է ծերունի, Յոհան հինաւուրց: Փաւստոս եպիսկոպոսի ազգն եւ նշանակութիւնը նախորդ պատմութեան մէջ բացակայում է, իսկ Զ. դպրութեան մէջ այդ երկու հանգամանքը մանրամասն պատմուած է: Այս բոլորը տարբերութիւններ են, որոնք ուրոյն ուրոյն ոչինչ չեն ցոյց տալիս, եւ որոնք խմբով եւ միասին դիպուածական չեն, այլ մատենագրական նշխարների տարբերութիւնն են սոսկ վկայում: Բայց այդպիսի օրինակների բազմութիւնից խուսափում ենք լոկ աւելորդ դատելով:

## 12.

Երեւելի եկեղեցականները Զ. դպրութեան մէջ են — Զաւէն, Շահակ, Ասպուրակ, Փաւստոս, Զորթ, Առոստոմ, Տիրիթ, Կիրակոս, Զորթուազ, Տիրիկ Մովսէս, Ահարոն, Յոհան, Գինդ եւ իւր աշակերտները — Վաչակ, Արտոյդ, Մարախ, Տրդատ եւ Մուշէ: Թէպէտ Հայոց հայրագրութիւնը բացակայելով՝ հնար չկայ յուսալ այս եկեղեցականների մասին աւանդուած լիակատար ծանօթութիւնը ձեռք բերել, այնու ամենայնիւ դժուար չէ տեսնել, որ երեւելի եպիսկոպոսների յիշատակութիւնը նախնեաց երկերի մէջ ամէն տեսակ փոփոխութեան եւ այլ եւ այլ աղբիւրների ազդեցութեան է ենթարկուած: Դիտենք նախ Զաւէնի, Շահակի եւ Ասպուրակի պատմութիւնը: Զ. դպր. Բ եւ Դ Զաւէն եւ Ասպուրակ յիշում են ի զաւակէ Աղբիանոսի,

իսկ Շահակ ունի անորոշ մի մակդիր Զ. դպր. Գ. "կորճեայ"։ Խորենացին Շահակին էլ յիշում է "յազգէ եւ ի ժառանգութենէ" Աղբիանոսի (Գ. ԼԹ)։ Միւս կողմից Սոփերք (Է. ԻԸ), Վարդան պատմիչ, Սամուէլ Անեցի, Միքայէլ Ասորի, եւ Ներսէսեան Դպրանոցի ձեռագիրը (Nr. 30, ըստ տպ. ցուցակի 177բ) — միաձայն վկայում են, որ Շահակ, Զաւէն եւ Ասպուրակ եղբարք էին՝ ի զաւակէ Աղբիանոսի։ Արդ՝ թողնենք միւսներին, Վարդան, Միքայէլ եւ Սամուէլ՝ յայտնի է, որ յետին դարերի անձինք են եւ սակայն աւելի որոշ տեղեկութիւն են հաղորդում ներկայ խնդրում. հարկաւ՝ նոքա իրենցից չստեղծեցին այդ, այլ աւելի արժանահաւատ դատուած աղբիւրներից օգտուեցին, անուշադիր թողնելով պատմահօրն եւ Դ. դարի յատուկ եւ յայտնի պատմիչին — Փաւստոսի պատմութիւնը։

Չկայ սակայն երկու պատմիչ, որոնք երբէք Աղբիանոսեանների պատմութիւնը միակերպ հաղորդէին. իւրաքանչիւր յիշատակարան իւրակերպ է այդ կէտում. Փաւստոս, Խորենացի եւ Յովհաննէս Կաթուղիկոս չգիտեն թէ նոքա եղբարք են. ուրեմն եւ նոյն են այդ մասի մէջ. բայց կարգը տարբեր են հաղորդում. ըստ Խորենացւոյ եւ Յոհաննէս կաթուղիկոսի՝ նախ Շահակ, ապա Զաւէն, ըստ Զ. դպրութեան՝ նախ Զաւէն, ապա Շահակ։ Վարդան եւ Սոփերք ոչ մէկին չեն հետեւում լիակատար կերպով. նրանք նախադասութիւնը նշանակում են հակառակ Զ. դպրութեան եւ համաձայն Խո-

ընթացու եւ Յովհաննէս կաթուղիկոսի, բայց վերջիններից տարբերւում են նրանով, որ Ջաւէնին եւ Շահակին եղբարք են յիշում։ Վարդան եւ Սոփերք այդ յիշում են բառացի ոճով, որ չունին Խորենացի, Յոհաննէս կաթուղիկոս եւ Փաւստոս։

*Սոփերք Ե. ԻԷ—ԻԸ։*

Զկնի սորա կացուցանեն յաթոռ սորուն զՇահակ ի զաւակէ Աղբիանոսի, այր զովելի եւ լի առաքինութեամբ եւ բարեկարգութեամբ կրօնից։ Ոչ եւս ըստ սովորութեանն առաջնոյ առաքեալ զնա ի Կեսարիա, այլ լքեալ ի բաց զօրէնն առաջին, ըստ օրինի պատրիարգաց կալաւ զկարգ...։ Եւ զկնի Շահակայ, զՋաւէն եղբայր նորուն հաստատեն յաթոռ նորա նովին առաքինահրաշ վարուք պայծառացեալ։ Եւ ապա Ասպուրակէս եղբայր նորուն կալաւ զաթոռն ի նոյին առաքինութիւնս յառաջադէմ գտեալ։

*Վարդան (Հրատրկ. Մ. Էմինի, Մոսկուա էջ 69։)*

Եւ կացոյց Պապ ի տեղի նորա զՇահակ ոմն սակաւ աւուրս եւ ապա զՍահակ ի գաւառէն Ապահունեաց առանց մետրապօլտին Կեսարիոյ, ըստ օրինի պատրիարգաց, որ պաշտեաց զաթոռն ամս չորս։

Յերկրորդ ամի Վարազդատայ Արշակունւոյ ննջէ Տէր Սահակ եւ յաջորդէ զնա Ջաւէն՝ եղբայր նորա լաւ իբրեւ զնա ամս չորս։

Յերրորդ ամին Արշակայ ննջէ Ջաւէն եւ առնու զաթոռն Ասպուրակէս՝ եղբայր նոցունց եւ առաքինակից, ամս եօթն։ —

Ըստ երեւութին, Սոփերք եւ Վարդան նոյն են այսքանով. բայց ո՛չ. ըստ Վարդանի Ներսէսին յաջորդեցին Շահակ, Սահակ, Ջաւէն Ասպուրակէս, ըստ Սոփերաց՝ Շահակ, Ջաւէն եւ Ասպուրակէս։ Առանց մետրապօլտին կարգուած կաթողիկոսն ըստ Վարդանի է Սահակ, ըստ Սոփերաց՝ Շահակ, ըստ Փաւստոսի՝ Յուսիկ ոմն (Ե. դպր. ԻԹ)։ Այս կերպ եթէ շարունակենք,

նոյնատեսակ տարբերութիւնների կարգը դեռ շատ կարելի է ընդարձակել. մենք դադարում ենք, բաւ համարելով այդքանն եւս՝ աննման ցուցած լինելու պատմիչներին, սկսած Փաւստոսից եւ Խորենացուց եւ առ յապայ: —

Բայց պիտի յիշենք հետեւեալը: Ձաւէն, Շահակ եւ Ասպուրակ միակերպ հետեւող են հագուստի այն ձեւին, որ Ձաւէնից սկսած մուծուեց եկեղեցական կեանքի մէջ. այդ ընթացքն ու սկսուածքը դատապարտուած է Զ. դպրութեան մէջ. ընդհակառակն Խադի մասին պատմութիւնը Փաւստոսի մէջ այն պատկերն ունի, որ մեծ եւ անհիմն պատմական սխալ պիտի ճանաչուէր, եթէ Խադի վարքի մասին որ եւ է կասկածամտութիւն թոյլ տար քննադատութիւնը: Սակայն Խորենացին բոլորովին հակառակն է աւանդում. “Շահակ էր ոչ հեռի ի գովութենէ„ (Գ. ԼԹ), իսկ Աղբիանոսեանների 13 տարեայ հովուութեան մասին Խորենացին չի հաղորդում որ եւ է տեղեկութիւն որ արդարացնել կարելի լինէր Փաւստոսի դատապարտութիւնն այդ եկեղեցականներին: Յիշենք նաեւ որ Խորենացուն մերթ ընդ մերթ նոյն խնդրում համաձայնում են այլեւայլ յիշատակարաններ. առանց մի եւ նոյն ժամանակ Փաւստոսին միայնակ թողնելու՝ հակառակաբար եւ երբեմն մասնակի համաձայնելով նրան: Նշանաւորն այն է, որ Խորենացին մի այլ տեղ հեռաւոր դիրքով Խադի պատմութեան մէջ, անշահ եւ անմիտում պայմանների կցմամբ, հաղորդում է այն ինչ որ

Զ. դպրութեան մէջ Զաւէնին է վերագրուած։ Ըստ Խորենացու, պճնասիրութիւն եւ զարդարուն հագուստը Խադի ներմուծած եւ գործածածն է եւ ոչ թէ Զաւէնի. «Այս Խադ յամենայնի նմանեալ մեծին Ներսիսի, եւ առաւել եւս ի տեսչութիւն աղքատաց. որոյ շտեմարանքն աղբերացան սքանչելապէս իբր առ Եղիայիւ եւ Եղիսէիւ. եւ ի յանդիմանել զարքա՛յ՝ ահաւոր եւ սաստիկ էր եւ աներկիւղ։ Եւ ոչ եղեւ ի նմա գամագիւտ սատանայ, բայց վասն միոյ նուագի, զի էր պճնող առ հանդերձս եւ ձիասէր. զոր պարսաւեալ այպանէին փոխանակաբանել՝ որք ի նմանէ յանդիմանեալ լինէին։ Վասն որոյ թողեալ այնուհետեւ զպերճագոյն հանդերձն, խարազնազգեստ եղեալ՝ իշով շրջէր մինչեւ ցօր մահուան իւրոյ»։ (Գ. ԼԱ)։

Պր. Ց. Դաղբաշեան Խորենացու եւ Փաւստոսի այդ տարաձայնութիւնը մեկնելու դժուարութիւնը դիւրացրել է նրանով, որ Խորենացուն վերագրել է խարդախելու ծանրութիւն[1]։ Ոչինչ չունինք անձնական կարծիքի յարգանաց դէմ. Պր. Դաղբաշեան անշուշտ եւ արդարեւ ունի հեռաւոր հիմքեր եւ դրդիչներ, որոնք Հայոց պատմութեան կցկցեալ վիճակը յընդհանուրս անուրանալի են կացուցանում։ Բայց երբ Աղբիանոսեանների պատմութեան մէջ եթէ՝ Փաւստոսի համեմատութեամբ, Խորենացուն խարդախող դատենք, կից նրան, խարդախող

[1] Փ. Բիւզանդացի եւ իւր պատմ. խարդախողը, Վիեննա 1898, 112–113։

պիտի եզրակացնենք նաեւ Յովհաննէս կաթողիկոսին, Սոփերքի հեղինակին, Սամուէլին, Միքայէլին եւ tutti quanti, որոնցից իւրաքանչիւրը տարբերւում է թէ Փաւստոսից, թէ Խորենացուց եւ թէ միւսներից առանց մի որ եւ է դրդիչի, միտումի եւ նպատակի։ Այլ է, եթէ այդ եւ նման խնդիրներում լոկ Փաւստոս եւ Խորենացի, կամ Փաւստոս եւ բոլոր մնացած պատմիչները, եւ կամ Խորենացին եւ բոլոր մնացած պատմիչները պատկերացնէին երկու ծայրայեղութիւններ մէկը միւսին ժխտող. "Ձայն բազմաց"ը նաեւ մատենագրականին եւ պատմականին պիտի կրկտէինք այն ժամանակ։ Բայց այսպէս չէ ներկայ խնդրում, ուր՝ միակողմանի հայեացքից կամենալով ազատ լինել, չենք կարող չտեսնել, որ անխտիր կերպով իրար ժխտում են մէկ կամ միւս մասով Փաւստոս եւ Խորենացի, Խորենացի եւ Սոփերք, Փաւստոս եւ Վարդան, Սոփերք եւ Վարդան, Սոփերք եւ Փաւստոս եւայլն։ Այդ երեւոյթի առաջ Զ. դպրութիւնը հանդիսանում է նոյնքան հաւաստի հեղինակութեամբ, որքան եւ մնացած պատմիչներից իւրաքանչիւրը։ Մեր կարծիքով այս վիճակն ընդհանուրս աղբիւրների տարբերութեանց արդիւնքն է, աղբիւրների՝ որոնք ամբողջութեամբ եւ կամ քաղուածաբար այսօր ներկայանում են պատմիչների կապակցեալ, խմբագրեալ եւ կցկցեալ երկերի մէջ։

Հետեւեալ նկատողութեան մէջ մենք կը ջանանք բնորոշել այն աղբիւրը, որի վրայից կազմել է խմբագրողը արդի Զ. դպրութիւնը։ —

## 13.

Զ. Դպրութեան մէջ յիշուող եպիսկոպոսներն անհամեմատ թիւ ունին համեմատութեամբ Հայաստանի նահանգների, թող թէ գաւառների։ Ի բաց առեալ նրանց որոնք եպիսկոպոսապետ, թելակալ եւ վանակեաց են յիշւում, մնում են Արտիթ, Տիրիկ, Մովսէս, Կիրակոս, Զորթուազ եւ Ահարոն, որոնք էին Տայքի, Բասենոյ, Վանանդայ եւ Արշարունեաց եպիսկոպոսները։ Ուրիշ խօսքով միայն երկու նահանգների եպիսկոպոսներն են յիշուած Զ. դպրութեան մէջ։ Այդ երեւոյթի հանդէպ տեսնում ենք, որ նախորդ դպրութիւնները, Սոփերք եւ այլ եւ այլ յիշատակարանք Դ. դարում շատ առիթներով են եպիսկոպոսական անուանացուցակներ յիշում, եւ կամ խմբական ներկայութիւնը յիշատակում։ Սոփերք միանգամից տասնից աւելի “մեծաթոռ եպիսկոպոսներ„ է յիշում՝ որոնք առաջնորդեցին Ներսէսին ի Կեսարիա (Է. ԻԶ)։ Բայց Զ. դպրութեան մէջ եպիսկոպոսների այդ պակասաւոր թիւը պայմանաւորուած չէ “երեւելի„ իմաստով, քանի որ նոյն Զ. դպրութեան մէջ անարժան, տգէտ եւ ագահ Յոհանի պատմութիւնն ընդարձակ էջեր է գրաւում։ Միւս կողմից, Սահակ Պարթեւի եւ նրա աշակերտների (60 սպուդէք), այլ եւ հռչակաւոր՝ Ներսէսի քարտուղար Մեսրոպի պատմութիւնն ու անունն է Զ. դպրութեան մէջ բացակայում։ Ուրեմն մեղանչած չենք լինել իրականութեան դէմ, եթէ նկատենք, որ Զ.

դպրութեան մէջ եկեղեցական պատմութիւնը թերթեւակի, անցողակի եւ թափթփուած վիճակի մէջ է, մի "վիճակ, որ հասկանալի է որ եւ է գաւազանագրութեան կամ աթոռակալական ժամանակագրական ցուցակի վերաբերմամբ, ուր պլընդպլըղ, թերի եւ ստուգելի է ամէն ինչ։

Մենք ժամանակագրական խօսքը ստորագծում ենք եւ հիմք ունինք։

Նկատուած է արդէն քանիցս, որ Փաւստոսի պատմութիւնը ժամանակագրութիւն չունի. այդ արդարացի, հիմնաւոր մի դիտողութիւն է։ Տրդատ, Խոսրով, Արշակ, Պապ, Վարազդատ, Արշակ, Վաղարշակ թագաւորները գահ նստեցին, կառավարեցին, մեռան, բայց թէ երբ, որքան ժամանակ, — Փաւստոսի պատմութեան մէջ այդ երկու հարցն եւ նրանց պատասխանը գոյութիւն չունին։ Նոյն վիճակի մէջ է նաեւ կաթողիկոսների պատմութիւնը· Գրիգոր, Արիստակէս, Վրթանէս, Յուսիկ, Փառէն, Շահակ, Ներսէս, Չունակ եւ Յուսիկ կաթողիկոսների մասին ոչ մի ժամանակագրական տեղեկութիւն չի հաղորդուած նախորդ դպրութեանց մէջ. Նրանց մահը, որ նկարագրուած է Գ. դպր· ԺԱ, ԺԲ, ԺԶ, ԺԷ, Ե· դպր· ԻԴ, ԻԹ գլուխների մէջ, յիշուած է առանց հաղորդելու թէ քանի տարի հովուեցին նրանք։ Այս բոլորը միօրինակ վիճակ ունի. եւ էլ կասկածի տեղիք չի մնում թէ նախորդ դպրութեան հեղինակը իբր որ եւ է պատահական պատճառի ազդմամբ անուշադիր է թողել այդ էական խնդիրը· ոչ. հեղի-

նակի գրչի համար այդ սովորութիւնն առանձնայատկութիւն է, մի տեսակ կանոն է, որ բացառութիւն չունի: Սակայն այս անգամ եւս այդ կանոնը քանդողը Զ. դպրութեան հեղինակն է, որ գրում է. “Զաւէն կալաւ զտեղի զամենայն աւուրս կենաց իւրոց ամս երիս„: “Շահակ առաջնորդեաց ամս երկուս„: “Ասպուրակ առաջնորդեաց դրանն Խոսրովու„ (լիուլի): Որ այս տողերը մի նոր հեղինակի գրչի ծնունդ են, որ վարժուած է նոր սովորութիւններով, նոր արտայայտութեան եղանակով — այդ անկասկածելի է. բայց անկասկածելի է եւ այն, որ այդ մի սովորութիւն է, արտայայտութեան մի եղանակ է, որը ժամանակագրական գրուածքի մէջ միայն կարող է տեղ ունենալ. որն այն հեղինակին կարող է յատուկ լինել, որ համոզուած լինի թէ “ոչ է պատմութիւնն ճշմարիտ առանց ժամանակագրութեան„. եւ բնաւ այն հեղինակին, որ երեք նախորդ դպրութեան մէջ հազարումի անգամ “ապա, յայնժամ, յետ այսորիկ, ի ժամուն„ եւ նմանատեսակ անորոշ առասպելական ոճով գիտէ եղել առաջ վարել իւր պատմութիւնը:

Սակայն պիտի նկատենք նաեւ, որ Զ. դպրութեան աղբիւրը մի անօրինակելի, անարժանահաւատ ժամանակագրութիւն էր, որից չեն օգտուած պատմիչները. եւ արդարեւ, ոչ միայն Աղբիանոսեան կաթողիկոսների պատմութիւնը, այլ եւ ժամանակագրութիւնը տարաձայնում է պատմական երկերի համեմատու-

թեամբ։ Խորենացին նշանակում է — Շահակ՝ չորս տարի, Զաւէն՝ չորս տարի, եւ Ասպուրակ՝ հինգ տարի։ Վարդան նշանակում է — Սահակ՝ չորս տարի, Զաւէն՝ չորս տարի, Ասպուրակէս՝ եօթը տարի։ Յովհաննէս կաթողիկոս, Խորենացու ընդօրինակող պատմիչը, մի անբացատրելի շեղումով տարբերւում է նրանից. ըստ կաթողիկոս պատմագրի Շահակ՝ վեց տարի, Զաւէն՝ երեք տարի, Ասպուրակէս՝ հինգ տարի։ Այդ մասի մէջ Յոհաննէս կաթողիկոսը նոյն իսկ ոճի նոյնութիւն ունի Սոփերքի եւ Վարդանի համեմատութեամբ եւ սակայն տարիները տեւողութեան մէջ տարբերւում է նրանցից։

## 14.

Զ. Դպրութեան մէջ երեւելի եպիսկոպոսների պատմութիւնն ըստ մատենագրականի եւ պատմականի բազմաթիւ ընդհանուր կէտեր ունի, համեմատութեամբ Ագաթանգեղոսի պատմութեան ճԺԱ—ճԺԴ պրակների։ Ահա այդ հատուածների համեմատութիւնը.

*Ագաթանգեղոս:*

ճԺԱ. Եւ դարձեալ բազում եւ անհամար դունդս գունդս վանականաց ի շէնս եւ յանշէնս, դաշտականս շինակեացս եւ լեռնակեացս, անձաւամուտս եւ արգելականս հաստատէր: Եւ զոմանս յորդւոց քրմացն առեալ զառաջասուն ձեռբաստունս առնէր. փոյթ ուսման ի վերայ ունէր, ընդ հոգեւոր խնամով եւ երկիւղիւ սնուցանել: Որ յաշտիճան եպիսկոպոսութեանն էին արժանի կա-

*Զ. Դպրութիւն:*

Առնոյր սուրբն Գինդ եւ զՄուշէ մանուկ ձեռնասուն, եւ հաղորդէր վարուցն մեծին Գնդայ:

լոյ, առեալ ձեռնադրութիւն ի նմանէ. որ առաջնոյն Աղբիանոսանուն, որ ապա կողմանցն եփրատական գետոյն լինէր վերակացու.
երկրորդին՝ Եւտաղիոս, որ ի կողմանս վայրացն Բասենոյ կացեալ լինէր հովիւ.
երրորդին՝ Բասոս.
չորրորդին՝ Մովսէս.
հինգերորդին՝ Եւսեբիոս.

վեցերորդին՝ Յովհաննէս.
եւթներորդին՝ Ագապէս.

ութերորդին՝ Արտիթէս.
իններորդին՝ Արսուկէս.
տասներորդին՝ Անտիոքէս.
մետասաներորդին՝ Տիրիկէս.

երկոտասաներորդին՝ Կիւրակէս:

Այսք՝ որ յորդւոցն քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց, աճեցուցանել զքարոզութիւն: Եւ ղայլոցն անուանս թէ եւ կամիցի ոք, ոչ կարասցէ շարժել:

Եւ զԱղբիանոս զայր ճշմարիտ եւ աստուածասէր՝ վերակացու թողոյր արքունական դրանն բանակին, եւ ինքն ընդ ժամանակս ժամանակս ի լերինս ելանէր. որ եւ ինքեամբ իւրով անձամբ իսկ օրինակ ցուցանէր: Առեալ զոմանս ամանս յաշակերտացն յիւրաքանչիւր մենաստանաց, երթեալ լեառնակեաց, մենակեաց, սորամուտ, ծակախիթ եղեալ, եւ զառօրէական խոտաքուտ ճարակօքն վճարել: Եւ այսպէս վշտակեաց տկարութեան զանձինս տուեալ, մանաւանդ հայեցեալ եւս ի մխիթարութիւն առաքե-

Յաղագս Տիրկան եւ Մովսէսի եպիսկոպոսաց (գլ. ԺԳ):
Յաղագս Յոհաննու եպիսկոպոսի (գլ. Ը—Ժ):
Յաղագս Արթայ եպիսկոպոսին Բասենոյ (գլ. Է):
Յաղագս Տիրկան եւ Մովսէսի եպիսկոպոսաց (գլ. ԺԳ):
Յաղագս Կիրակոսի եպիսկոպոսի (գլ. ԺԱ):

Եւ այլք բազումք էին նոցա աշակերտք հրեշտակակրօնք, զորոց զվարս ոք պատմել ոչ բաւեսցէ (գլ. ԺՋ): (Կիրակոս) էր այր ճշմարիտ եւ աստուածապաշտ (գլ. ԺԱ):
Որք միանգամ վասն սիրոյն Աստուծոյ յաշխարհէ էին մեկնեալ, ի յանապատս բնակեալ, ի քարանձաւս ամրացեալք յայրս եւ ի քարածերպս երկրի. եւ միահանդերձք, բոկագնացք, զգաստացեալք, խոտաճարակք, ընտա-

լական բանին՝ եթէ Յորժամ վասն Քրիստոսի տկարանամ, յայնժամ զօրացեալ լինիմ. եւ թէ՝ լաւ եւս լիցի պարծել տկարութեամբ, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի։

բուտք արմատակերք, զօրէն գազանաց ի լերինս շրջէին, լեշկամաշկօք եւ մորթօք այծենեօք, նեղեալք տառապեալք, եւ տարակուսեալք, յանապատի մոլորեալք ի ցուրտ եւ ի տօթ, ի քաղց եւ ի ծարաւ վասն սիրոյն Աստուծոյ (գլ. ԺԶ)։

Անդ էր ապաշխարհենալ գինւով, այլ առաւելուլ հոգւով, եւ պատրաստել զխորտս երգովք հոգեւորօք ի փառս եւ ի գովութիւն Աստուծոյ։ Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատում գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական լուսաւոր վարդապետութեան, առ ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ։ Անդ աղօթք ազերսալիք եւ պաղատանք փարելիք եւ խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց առ մարդասէրն Աստուած։

Եւ նովին հոգեւորաւ արութեամբ հանեալ աւուրս բոզուժս, յանապատ տեղիսն յականս եփրատական գետոյն. յայրս եւ ի քարածերպս երկրին բնակեալ լինէր, եւ ի կատարս լերանց։ Օրինակ առեալ զմեծին Եղիայի մարգարէին, եւ կամ զերանեալ զմկրտչին առաքինւոյն Յովհաննու. բարեաց գործոց նախանձաւոր եղեալ, զնոյն կեանս վարուցն քաջութեան աստուածամուխ կենացն անձին մատուցանէր։

Առեալ զվիճակ բնակութեան ունէր զանապատն, ուստի բղխեալ հոսէն ակունք Եփրատ գետոյն։ Անդէն բնակեալ ընդ ծակս վիմացն, ուր յառաջու կայանքն էին Մեծին Գրիգորի առաջնոյ. որում տեղեացն Ոսկիք կոչեն. ի նոյն ծակս էր բնակեալ մեծն անապատաւորաց Գինդ (գլ. ԺԶ)։

ՃԻԲ. Եւ թէ երբէք երբէք իջանել շրջել զօրացուցանել զաշակերտեալսն՝ ճշմարտութեամբ հոգւով, իրաց պիտոյից օգտակարաց ամենայն եկեղեցեացն, հանեալ յօգնականութիւն շնորհացն Աստուծոյ առանց իրիք զբաղելոյ, հանապազ իջանէր ի թիկունս դիպաց պատահելոց, եւ վճարէր զօրութեամբն Աստուծոյ: Եւ յորդագոյնս եւ պարարտագոյնս եւ անփակ բերանով զվտակս վարդապետութեանն ի սիրտս սերմանեալ ծաւալեցուցանէր. եւ զայս արարեալ զամենայն ժամանակս իւր՝ վասն անձին եւ վասն աշխարհին:

Քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք զանձանց առաքինութիւն կանոն աշակերտելոցն դնեն. մանաւանդ յուշ առնելով զտէրունականն զմիոյն զմիայնոյն զիմաստնոյն Աստուծոյ. քանզի ասէ իսկ. Սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել: Որով բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն եւ աննիազական անձամբ օրինակ կատարելոցն լինէր. յորժամ ի Թաբօրական լերինն զաւետեացն զերանութիւն տայր. եւ կամ ի նմին լերինն զկանոնական աղօթսն առնէր, մինչդեռ աշակերտքն ի տիբերական ծովուն նաւէին: Եւ դարձեալ՝ յաւուրս բաղարջակերացն յօրինական տօնին զգիշերոյն աղօթս երիցս անգամ ի ձիթաստանեայց լերինն առանձինն մատուցանէր: Ուստի յայտ իսկ էր եւ առանց հետազօտելոյ, թէ ոչ վասն անձինն ամենատէրն՝ այլ համաշխարհի յուսումն զայս գործէր, որ է օրինակ ամենայն հնազանդելոց. վասն որոյ եւ ասէն իսկ, թէ արթուն կացէք, յաղօթս կացէք, զի մի մտանիցէք ի փորձութիւն:

լական բանին՝ եթէ Յորժամ վասն Քրիստոսի տկարանամ, յայնժամ զօրացեալ լինիմ. եւ թէ՝ լաւ եւս լիցի պարծել տկարութեամբ, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի։

բուտք արմատակերք, զօրէն գազանաց ի լերինս շրջէին. լեշկամաշկօք եւ մորթօք այծենեօք, նեղեալք տառապեալք, եւ տարակուսեալք, յանապատի մոլորեալք ի ցուրտ եւ ի տօթ, ի քաղց եւ ի ծարաւ վասն սիրոյն Աստուծոյ (գլ. ժԶ)։

Անդ էր ապաշխարքենալ գինւով, այլ առաւելուլ հոգւով, եւ պատրաստել զոխրաս երգովք հոգեւորօք ի փառս եւ ի գովութիւն Աստուծոյ։ Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատում գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական լուսաւոր վարդապետութեան, առ ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ։ Անդ աղօթք աղերսալիք եւ պաղատանք փարելիք եւ խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց առ մարդասէրն Աստուած։

Եւ նմին հոգեւորաւ արուեստին հանեալ աւուրս բազումս, յանապատ տեղիսն յականս եփրատական գետոյն, յայլս եւ ի քարածերպս երկրին բնակեալ լինէր, եւ ի կատարս լերանց։ Օրինակ առեալ զմեծին Եղիայի մարգարէին, եւ կամ զերանեալ զմկրտչին առաքինւոյն Յովհաննու. բարեաց գործոց նախանձաւոր եղեալ, զնոյն կեանս վարուցն քաջութեան աստուածամուխ կենացն անձին մատուցանէր։

Առեալ զվիճակ բնակութեան ունէր զանապատն, ուստի բղխեալ հոսէն ակունք Եփրատ գետոյն։ Անդէն բնակեալ ընդ ծակս վիմացն, ուր յառաջու կայանքն էին Մեծին Գրիգորի առաջնոյ, որում տեղեացն Ոսկիք կոչեն. ի նոյն ծակս էր բնակեալ մեծն անապատաւորաց Գինդ (գլ. ժԶ)։

ՃԻԲ. Եւ թէ երբէք երբէք իջանել շրջել զօրացուցանել զաշակերտեալսն՝ ճշմարտութեամբ հոգւով, իրաց պիտոյից օգտակարաց ամենայն եկեղեցեացն, հաւատալ յօգնականութիւն շնորհացն Աստուծոյ առանց իրիք զբաղելոյ, հանապազ իջանէր ի Թիկունս դիպաց պատահելոց, եւ վճարէր զօրութեամբն Աստուծոյ։ Եւ յորդագոյնս եւ պարարտագոյնս եւ անփակ բերանով զվտակս վարդապետութեանն ի սիրտս սերմանեալ ծաւալեցուցանէր. եւ զայս արարեալ զամենայն ժամանակս իւր՝ վասն անձին եւ վասն աշխարհին։

Քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք զանձանց առաքինութիւն կանոն աշակերտելոցն դնեն. մանաւանդ յուշ առնելով զաւետարանականն զմիոյն զմիայնոյն զիմաստնոյն Աստուծոյ. քանզի ասէ իսկ. Սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել։ Որով բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն եւ աննիազական անձամբ օրինակ կատարելոցն լինէր. յորժամ ի Թաբորական լերինն զաւետեացն զերանութիւն տայր. եւ կամ ի նմին լերինն զկանոնական աղօթսն առնէր, մինչդեռ աշակերտքն ի տիբերական ծովուն նաւէին։ Եւ դարձեալ՝ յաւուրս բաղարջակերացն յօրինական տօնին զգիշերոյն աղօթս երիցս անգամ ի ձիթաստանեայց լերինն առանձինն մատուցանէր։ Ուստի յայտ իսկ էր եւ առանց հետազօտելոյ, թէ ոչ վասն անձինն ամենատէրն՝ այլ համաշխարհի յուսումն զայս գործէր, որ է օրինակ ամենայն հնազանդելոց. վասն որոյ եւ ասէն իսկ, թէ արթուն կացէք, յաղօթս կացէք, զի մի՛ մտանիցէք ի փորձութիւն։

Իսկ արդ՝ թեթեւագոյն արուեստից պակասագոյն ի գիտութենէն ազգք երկրածնաց, ո՛րչափ այն արուեստի ոք համարիցի՝ որ ընդ աստուածախօսն կատարեսցէ, որով եւ երանելին Պաւղոս ամենեցուն տգիտանալ ասէ. վասն որոյ եւ զամենակեցոյց Հոգին ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբքն բարեխօս գիտէ:

Արդ՝ յորժամ լսիցեմք, թէ սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել, ապաքէն առնելն, զի ուսուցէ՝ ոչ զի պարգեւեսցի, իմանալի է. եւ բարեխօսել Հոգւոյն սրբոյ՝ առ ի վարդապետելոյ մեզ. զի ընդ միմեանս բարեխօսիցեմք. եւ ոչ եթէ առ բարձրագոյն ոք միածնին կամ Հոգւոյն սրբոյ բարեխօսելն՝ գիտելի է. քանզի միապատիւ աստուածականն, եւ ոչ բազմաբար: Իսկ երանելի Առաքելոցն ընկալեալ ի վարդապետութենէ ճշմարտութեանն, նախ կարօտական անձանցն օգուտ, եւ ապա օրինակ աշակերտելոցն, բարձեալ տանէին. երբեմն առանձինն. եւ երբեմն ժողովովք գումարելովքն զփառսն Քրիստոսի բարձրացուցանէին:

Քանզի առաւել եւս օգտակար յամենայն աշխարհական զբօսանաց առանձին սահման, եւ միայն աստուածպաշտութեան պարապել: Զոր եւ մարգարէքն յառաջագոյն գործէին, որք ի լերինս յանապատս, յայրս եւ ի քարածերպս վիմաց զաստուածեղէն կրօնիցն ծառայութիւն հարկանէին: Նոյնպէս եւ ամենայն հարքն, որ առաջնորդեցան յառաքելական կանոնացն եւ յինքեանց անձանցն բերին օրինակս վերջնոցս: Ուստի եւ երանելիս այս բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ, եւ

Որք միանգամ վասն սիրոյն Աստուծոյ յաշխարհէ էին մեկնեալ, ի յանապատս բնակեալ, ի քարանձաւս ամրացեալք յայրս եւ ի քարածերպս երկրի: Եւ սուրբն Գինդ... բազում յաշխարհի ուղղեալ կացուցանէր կարգս

ամենայն ուժոք մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ գուշակէր։ Եւ այսպէս յառաջ ամենայն աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալ, պարարտացուցանէր ամեթութեամբք զամենեսեան. խաղացեալ գայր ի բազում ժամանակս, եւ նովին ի նոյն կանխեալ եւ ի նմին հանապազորդեալ։

ՃԻԴ. Եւ մեծ արքեպիսկոպոսն Գրիգորիոս՝ սուրբ որդւովն իւրով Արիստակիսաւն եւ ամենայն երեւելի օգնականօքն զամենայն աշակերտելովքն շրջէր՝ եւ հաստատէր զնոսա կալ ի պատուիրանին ճշմարտութեան։

մարդկան զաստուածեղէն կրօնիցն (գլ. ԺԶ)։

Եւ էր սուրբն Գինդ լի հոգւովն Աստուծոյ. եւ որք ընդ նմա, ըստ նմին օրինակի առնէին սոքա նշանս մեծամեծ.. Եւ ընդ բազում հեթանոս տեղիս շրջէին յաշխարհս հեռաւորս, եւ ի սփիւռս հեթանոսաց դարձուցանէին զմոլորութիւն բազմաց, եւ զբազում մարդիկ ածէին ի գիտութիւն կենաց եւ ի ճանապարհն ճշմարտութեան (գլ. ԺԶ)։

## 15.

Արդէն նկատել է քննադատութիւնը, որ վերցանուն կրկնուած է Զ. դպրութեան եւ Ագաթանգեղոսի ՃԻԱ պրակի մէջ (Հ. Բ. Վ. Սարգսեան, "Ագաթ. եւ իւր բազմադ. գաղտնիք„ էջ 226/7)։ Սակայն երկու առաջադրած հատուածների համեմատութիւնից պարզ հետեւում է, որ նրանց առնչութիւնը միայն այդքանը չէ, այլ աւելի է։

1. Արտաքին կազմութիւնը. ինչպէս Փաւստոսի, նոյնպէս եւ Ագաթանգեղոսի պատմու-

թեան մէջ վերջին ծայրին են կցուած եպիսկոպոսների եւ վանականների պատմութիւնը. երկու տեղ եւս նախորդ պատմութիւնները լռում են եկեղեցականների խմբական գործունէութեան եւ կենցաղավարութեան մասին, ապա Ս. Գրիգորից եւ Ս. Ներսէսից յետոյ յիշւում է յաջորդ շրջանում եպիսկոպոսների պատմութիւնը։ Այդ զուգադիպութեան ձայնակից է եւ այն որ Զաւէն, Շահակ եւ Ասպուրակ Զ. դպրութեան մէջ սոսկ եպիսկոպոսի տիտղոս ունին, ըստ խոստման "յաղագս եպիսկոպոսացն որ երեւելիք էին". բաց ի այդ՝ եպիսկոպոսների եւ վանականների պատմութեան այդ մեկուսացեալ վիճակը, որ նկատելի է Ագաթանգեղոսի եւ Զ. դպրութեան մէջ, նոյն իսկ վկայուած է Զ. դպրութեան ճակատին մի ծանօթութեամբ — "մնացուածք բանից ի ծայրէ"։ Հարկաւ, "մնացուած" այլ կերպ "պատուաստուած" կը նշանակէ, որ կատարուած է մի օտար հեղինակի ձեռքով, քանի որ բուն հեղինակն իւր աշխատութեան շարունակութիւնը մնացուածք չէր կոչել։

2. Բովանդակութիւնը. երկու տեղ եւս տասնուերկու եպիսկոպոսներ (Շահակ, Զաւէն, Ասպուրակ, Փաւստոս, Զորթ, Առոստոմ, Արտիթ, Զորթուազ, Տիրիկ, Մովսէս, Ահարոն եւ Յոհան.) եւ անթիւ անհամար վանականներ. երկու տեղ եւս եպիսկոպոսները նախակարգուած են վանականներից. տարբերութիւնն այն է լոկ, որ մի տեղ վանականների պատմութիւնն

է ամփոփուած ի մի գլուխ, իսկ եպիսկոպոսներին ուրոյն ուրոյն գլուխներ են յատկացրուած, իսկ միւս տեղ ընդհակառակն եպիսկոպոսներն են ի մի գլուխ ամփոփուած եւ վանականների մասին մի քանի պրակի մէջ է պատմուած։

3. Ոճր. Զ. դպր. ԺԶ գլխից յատուկ անունները հանելուց յետոյ, մնացածը վանականների կենցաղավարութիւնն է, որ բառացի ոճով հանդիպում է Ագաթանգեղոսի պրակների մէջ հռետորական եւ մեկնողական յաւելումների կցկցմամբ։ Բաց ի նոյնութիւնից, նկատելի է նաեւ, որ մի եւ նոյն իմաստն երկու տեղ եւս հանդիպում է նոյնանիշ բառերի մէջ ամփոփուած վիճակով օր. — "վասն սիրոյն Աստուծոյ = վասն սիրոյն Քրիստոսի". "խոտաճարակք ընդաբուտք = խոտաբուտ ճարակ". "ի քարածերպս երկրի = ի քարածերպս վիմաց" եւ այլն։

4. Յատուկ անուններ. երկու տեղ եւս կրկնուած է վեց անուն։

5. Շրջանի ամբողջութիւնը. երկու տեղ եւս ցուցակները թերի են՝ համեմատութեամբ յաջորդ շրջանի պատմութեան. ՃԻԱ պրակից բացակայում է Դանիէլ եւ Փաւստոս եպիսկոպոսների անունը, որոնցից առաջինը, ըստ Փաւստոսի, Գրիգորի աշակերտն էր, եւ երկուսն եւս Գրիգորից 15—20 տարի անց՝ ծերունի, հեղինակաւոր են յիշուած. իսկ Զ. դպրութիւնից պակասում են Սահակ եւ Մեսրոպ, որոնք Խոսրովի կառավարութեան միջոցին յայտնի էին եւ հռչակաւոր, ըստ կենսագրին։

Արդ՝ այս բոլոր նմանութիւնը, որին կից անպակաս է նաեւ նոյնութիւնը, սովորական եղանակով բաւական է, որ քննադատն եզրակացնի նրանցից մէկնումէկի աղբիւր լինելը միւսի համար։ Նոյն իսկ աւելին կարող ենք ասել․ սուտ վեց կրկնուող անունը նկատելուց յետոյ Հ. Բ. Սարգսեան չի դանդաղել եզրակացնելու մէջ, որ ուրեմն Ագաթանգեղոսի խմբագիրը գողացել է Զ. դպրութիւնից այդ վեց անունը, եւ այդու եպիսկոպոսների ցուցակ է յօրինել. որ նրանց ձեռնադրութիւնն եւ իրենք եպիսկոպոսներն իսկ, ըստ Ագաթանգեղոսի նկարագրի, մինչեւ իսկ գոյութիւն ունեցած չեն եւ պատմական չեն։

Վարկպարազի եզրակացութիւն, որ հաստատութիւն չունի, եւ չի պաշտպանւում քննադատի եւ ոչ մի առաջադրած հիմքով, ըստ հետեւեալի։

## 16.

Հինգ են Հայր քննադատի հիմքն (Նոյն. 224—6)։

1. Որովհետեւ Ագաթանգեղոս նախ քան եպիսկոպոսների անուանացուցակը պատմել է Ս. Գրիգորի փոյթը քրմածիններին ուսուցանելու, ապա ուրեմն "միեւնոյն երկասիրութեան մէջ" այդ մանկանց ձեռնադրութեան պատմութիւնը յաստիճան եպիսկոպոսութեան մի հակասութիւն է նախընթացին։

2. ճԻԱ պրակը յիշում է միայն տասն-

ուերկու եպիսկոպոսների անուն, մինչ նոցա թիւը 400 էր. ուրեմն հեղինակը ժամանակակից անձն չէ. նա դիւաններից եւս օգտուած չէ, ապա թէ ոչ բոլորի անունը կը յիշէր. ընդհակառակն նա խոստովանում է որ իրեն յայտնի իսկ չեն բոլոր անունները։

3. “Բաց ի Տիրիկէսէն միւսներն յունական եւ ասորի հնչումն ունին։„

4. Եթէ Ս. Գրիգորը ձեռնադրած լինէր տասնուերկու քրմածիններին, Զենոբն եւս՝ իբրեւ ժամանակակից պատմիչ կը յիշէր նրանց։ Ընդհակառակն Զենոբ քրմական ազգը վատաբանած է, իբրեւ անհաւատարիմ քրիստոնեայ ժողովուրդ։

5. Աղբիանոս յիշուած է ՃԻԱ պրակի մէջ միանգամից թէ՛ վերակացու ի կողմանս եփրատական գետոյն, եւ թէ՛ վերակացու արքունի դրան բանակին. ուրեմն եւ անյարիր են ՃԻԱ պրակի մասերն եւ հետեւաբար անհարազատ։

Հայր քննադատի առաջին հիմքն անհիմն է եւ թիւր մեկնուած։ ՃԻԱ պրակի մէջ, նախ քան ցուցակը, քրմածին եպիսկոպոսների ուսուցման մասին այս է հաղորդուած. “Ս. Գրիգոր՝ փոյթ ուսման ի վերայ ունէր, ընդ հոգեւոր խնամով եւ երկիւղիւ սնուցանել։„ Արդ՝ այդ մի ուսուցումն էր, որ հասակաւոր մարդիկ եւ քրմերն իսկ ստացան եւ ապա ընդունեցին քրիստոնէութիւնը։ Բայց դպրոցի ուսուցման եւ ձեռնադրութեան մասին տեղեկութիւնը հակասութիւն

չէ, նախ որ չի հաղորդուած թէ տասնուերկու ձեռնադրեալները դպրոցական սանե՞ր էին, թէ հասակաւոր գրագէտ քրմեր. իսկ Աղբիանոս որ յիշուած է այդ ցուցակի մէջ աւանդւում է իբրեւ հասակաւոր եւ Ս. Գրիգորին գործակից՝ սկսած ի Տարօնոյ մաքառմանէ. երկրորդ՝ իրական ընդունելով քրմաց որդւոց ուսուցումն ի դպրոցս բնականօրէն հասկանալի է դառնում, որ նրանց հայրերը, իբրեւ գրագէտ անձինք, զկնի դարձին, եպիսկոպոս դառնալով օրինակ լինէին իրենց ժողովրդի համար. այդ շատ հասկանալի է մանաւանդ այն օրինակներով, որ հեթանոսութեան եւ քրիստոնէութեան ընդհատման շրջանի պատմութիւնից յայտնի է։ Ի վերջոյ հնգետասանամեայ Գրիգորիսի ձեռնադրութիւնը վկայում է, որ մանուկ քրմածիններն եւս յետ ուսման կարող էին եպիսկոպոս լինել Ս. Գրիգորի երկարամեայ հովուութեան վերջին տարիներին։

Երկրորդ հիմքը գլխովին անհիմն է, եւ սազ չի գալիս գաղտնալուծող հայկաբանի գրչին. "Հեղինակն անգիտացած է բոլոր եպիսկոպոսների անունը յիշել. ուրեմն նա ոչ ժամանակակից է եւ ոչ էլ դիւաններից է օգտուել, իսկ ՃԻԱ պրակը ստեղծուած է։" Բոլորն երեւակայութիւն եւ ուրիշ ոչինչ. — ՃԻԱ պրակի մէջ անգիտութեան մասին խօսք եւ ակնարկ իսկ չկայ. անգիտութեան գաղափարը միայն մօտէնում է յունարէն Ագաթանգեղոսի ընթերցուածին, որի ի հայէ փոխադրութիւնը պնդելով միասին,

Հ. քննադատը նրա այլընդայլոյ ընթերցուածը գերադասել է Հայից։ Հայի մէջ կարդում ենք. “Եւ զայլոցն զանուանս թէեւ կամիցի ոք ոչ կարասցէ շարժել (տպ. Վենետիկի). “Եւ զայլոցն զանուանս եթէ կամեսցի ոք՝ ոչ կարասցէ թուել (տպ. Պոլսոյ)։ Այս կրճատ ձեւը՝ “ի բազմութենէ„ խօսքի բացա՛կայութեամբ, յաճախ գործածական է եւ նշանակում է — “այնքան շատ էին, որ եթէ ուզենանք էլ, չենք կարող մէկ մէկ թուել։„ Որ այդ է հատուածի միտքն եւ “ի բազմութենէ„ խօսքի բացակայութիւնը մի աւելորդ բծախնդրութեամբ է մատի փաթաթան դարձրել Հ. քննադատը — ապացոյց այն, որ մի էջ յետոյ նոյն հատուածը կրկնաբար կարելի էր տեսնել “ի բազմութենէ„ խօսքի անպակաս վիճակով — “Եւ որ եպիսկոպոսացն յաստիճան ձեռնադրեցան ի նմանէ, աւելի քան զչորեքհարիւր եպիսկոպոս, որք կացին տեսուչս տեղեաց տեղեաց. իսկ զկարգս երիցանց եւ կամ սարկաւագաց կամ անագանոսաց եւ որ այլ եւս ի պաշտօն Տեառն կացին անթիւք էին ի բազմութենէ։„

Երրորդ անգամ Հ. քննադատը գրում է. Բաց ի Տիրիկէսէն միւսներն յունական եւ ասորի հնչումն ունին։ Ասորի եւ յունական հնչումն ունենալը պրակի անհարազատութեան եւ անձանց չգոյութեան նշան չէ բնաւ։ Եւ իրօք Դ. դարի մի հեղինակ, լինի նա արդի Ագաթանգեղոսի պատմութեան թէ սոսկ ՃԻԱ պրակի համար, հայացի հնչումն պիտի չգործածէր իւր

աշխատութեան մէջ, այլ այն ձեւերով կը յիշէր անունները, որով գործածւում էին Նոքա. իսկ՝ որ Դ. դարում յոյն եւ ասորի ազգից էին մեր եկեղեցականները — այդ անկասկած է։ Այնուհետեւ Տիրիկէս հայկական հնչումն է դատուած. դուրս է գալիս, որ այդ էլ սխալ է։ Տէր արմատից են ըստ երեւութին Տիրիկէս, Տիրիկ, Տիրանամ ձեւերը, որ Փաւստոսի եւ Ագաթանգեղոսի մօտ ենք գտնում. նոյն արմատից են նաեւ Տիրանոս, Տէրինանոս եւ Տիւրանոս։ Այդ ինչպէս հաշտեցնել. Անտիոքոսի Տիրանոս եպիսկոպոսը ցայժմ հայ չէ ճանաչուած (Եւսեբիոս Եկ. Պատմ. Է. 22)։

Զենոբ լռել է եպիսկոպոսների ձեռնադրութեան մասին, բաց ի այն որ քրմական ազգին վատաբանել է նա. — "Զի ազգն այն յորժամ ի Քրիստոս դարձան, չէին կատարեալ ի հաւատսն եւ զհայրենի օրէնսն չիշխէին յայտնի ունել, այլ խաբէութեամբ ղայս հնարեցան ծամ միայն թողուլ ի գլուխ մանկանցն, զի զայն տեսեալ՝ յիշեսցեն զպաշտօն պղծութեան իւրեանց։„ Եթէ քրմածիններից եպիսկոպոս ձեռնադրուած լինէին, այդ վիրաւորանքը չէր ուղղել Զենոբ նրանց, դատել է Հ. քննադատը։ Նախ՝ յիշեցնենք, որ Զենոբ չի պատմել Ս. Գրիգորի գործունէութիւնը զկնի դարձին, եւ այդ է պատճառը, որ Ագաթանգեղոսի պատմութեան որոշ մասը միայն կարելի է ըստ պատմականի Զենոբի ամբողջ յիշատակարանին համդիպակաց դասել. հասկանալի է ուրեմն թէ ինչու

Զենոբ լռել է ինչպէս քրմածինների, նոյնպէս եւ Արիստակէսի եւ Վրթանէսի ձեռնադրութիւնն ի Ս. Գրիգորէ պատմել. չպէտք է մոռանալ, որ Զենոբի յիշատակարանի մէջ այդ պատմութիւնը յանձնարարուած է ճանաչել "յայլ պատմագրէ" (ԽԹ)։ Ուրեմն՝ կա՞յ արդեօք ճշմարտութեան մի մասնիկ անգամ Հայր քննադատի հայեացքի մէջ, որով Զենոբի չպատմածն անիրանական է հռչակել նա. չկայ։ Երկրորդ՝ Զենոբի վատաբանութիւնն ուղղուած է միայն Գիսանէի կռոց քրմերի ցեղին, որ ի Տարօն. բայց այդ չի նշանակում թէ յընդհանուրս քրմերից չէին կարող յուսալի եւ վստահելի անձինք լինել ի հաւատս Քրիստոսի. եւ Ագաթանգեղոս չի էլ յիշում թէ ՃԽԱ պր. տասնուերկու եպիսկոպոսները էին ի Տարօնոյ կամ ի քրմացն կռոցն Գիսանեայ։ Երրորդ՝ ի դէպ է յիշել, որ Զենոբի նման Փաւստոսն եւս յանդիմանել է Հայերին եւ աւելի խիստ է դատափետած շինական եւ ազնուական դասերը, քան Զենոբ քրմաց ազգը (Գ. դպր. ԺԳ)։ Բայց Փաւստոս մի եւ նոյն ժամանակ յիշում է Խադին եւ Փառէնին — տեղապահութեան եւ քահանայապետութեան պաշտօնում։ Ապա՝ Պապ եւ Աթանագինէս, թէպէտ Ս. Գրիգորի տոհմից էին, այնու ամենայնիւ Փաւստոսի մերկապարանոց դատապարտութեան են արժանացած։ Ուզում ենք այս բոլորով զգուշացնել, որ պատմիչների աննպաստ վերաբերմունքն այս կամ այն դասակարգին — քրմական, եկեղեցական, ազ-

նուական, չինական — հիմք չէ ամենեւին նոյն դասակարգի մէջ անհատների ներկայութիւնն անիրական ընդունելու։

Հայր քննադատն անհարազատութեան նշան է դատում Աղբիանոսի պաշտօնի մասին կրկնաբար յիշուածը նոյն պրակի մէջ։ — Աղբիանոսի պաշտօնի յիշատակութիւնն երկու տեղ եւս խառնակուած է եւ Հ. քննադատն իւր եզրակացութիւնն առաջարկում է առանց կանխաւ խանգարմունքն ուղղելու։ Եփրատական կողմերում Աղբիանոսի վերակացու լինելը մուծուած է Փաւստոսի Գ. դպր. Դ.ից, իսկ այս վերջինս, այսինքն Փաւստոսի Գ. դպր. Դ.ն, այլայլուած է այնքան, որ Հ. քննադատն ինքն եւս զգում եւ խոստովանում է թէ անհասկանալի կը մնան այն հատուածի ինչ ինչ մասերը (նոյն էջ 226։) Բաց ի այդ, որոշ չէ, արդեօք նոյն եւ մի ա՞նձն է, որ թէ՛ արքունի դրան եւ թէ՛ Եփրատական կողմերի վերակացուն է յիշուած. այդ խնդիրը ծագում է, որովհետեւ 1. արքունի դրան վերակացուն յիշուած է •••կ “այր ճըշմարիտ եւ աստուածասէր„ կոչումով. 2. 1709ի հրատարակութեան մէջ արքունի դրան վերակացուն Աղբիանոս չէ կոչուած, այլ Պաղբոս. 3. Չամչեան, որ ունեցել է իւր ձեռքի տակ 1709ի հրատարակութիւնը, Ա՛լբոս է կոչում արքունի դրան վերակացուին. այս աւելի նշանաւոր է նրանով, որ ցոյց է տալիս թէ գէթ Վենետկեան ձեռագրերի մէջ եղել են եւ թերեւս կան այդ հատուածի ընտրելագոյն ընթեր-

ցուածներ, որոնց հետեւած է Չամչեան, անուշադիր թողնելով 1709ի հրատարակութիւնը։

Այս բոլորից երեւում է, որ ՃԻԱ պրակը սոսկ Վենետկեան հրատարակութեամբ հիմք առնելով վճիռներ արձակելն աւելի շփոթելու նշանակութիւն ունի կարծիքները այն աշխատութեան մասին, որ առանց այդ էլ նախ թարգմանութեան, ապա խմբագրութեան, եւ ապա գրչագրական ազդեցութեանց է ենթարկուած։

Ի վերջոյ յիշենք, որ Հ. քննադատը նկատելով որ ՃԻԱ պրակի անուններից ոմանք կան նաեւ Փաւստոսի պատմութեան մէջ, այդ առաջին կռուանն է գտել ի Գրիգորէ նրանց ձեռնադրուիլը մերժելու, համարելով որ Ագաթանգեղոսի խմբագիրը Փաւստոսից է գողացել այդ անունները։ Բայց հետեւողական լինելու պահանջով, Ս. Գրիգորի ճգնութեան պատմութիւնն եւս (պրակ ՃԻԲ) գողացուած պէտք էր հռչակել ի Զ. դպրութենէ, քանի որ այդ մասում երկու պատմիչների նոյնութիւնն ու նմանութիւնը բառացի ոճով է։ Այդքան սակայն չի համարձակուել Հայր քննադատը եւ Ս. Գրիգորի ճգնութիւնն իրական է դատել։ Ուստի թոյլ է տրուած մակաբերել որ՝ ինչպէս վեց անունն Ագաթանգեղոսի խմբագիրն է գողացել Փաւստոսից, նոյնպէս՝ եւ դրա փոխարէն Փաւստոսի խմբագիրն է գողացել Գինդի պատմութիւնն Ագաթանգեղոսից։ Արդարեւ՝ մի շփոթ եւ խառնակ հասկացողութիւն, որ արդիւնք է

սակայն Հ. քննադատի միակողմանի եւ հապճեպ բանավարութեան։

Ամփոփենք. դիտելով Հ. քննադատի հիմքերից իւրաքանչիւրը, չեղաւ նրանց մէջ մէկը, որ տասնուերկու անձանց գոյութիւնն եւ ձեռնադրութիւնը ի Ս. Գրիգորէ մերժէր՝ անիրական մտքով։ Արդ՝ էլ ի՞նչն է ուրեմն, որ Հ. քննադատին մոլորեցրել եւ առաջնորդել է ի գայթակղութիւն, տասնուերկու անձանց գոյութիւնը չգոյ հռչակելու։

## 17.

Հ. քննադատին մոլորեցրել է վեց անուան յիշատակութիւնը միանգամայն ի Զ. դպրութեան եւ ի ՃԻԱ պրակին։ Բայց ՃԻԱ պրակի արդի վիճակը չի թոյլատրում նրա եւ Զ. դպրութեան առընչութեան խնդիրը դատել, թէ որը որից է ծագել՝ Զ. դպրութիւնը յԱգաթանգեղեա՞յ թէ ՃԻԱ պրակն ի Զ. դպրութենէ։ Նախ քան ՃԻԱ պրակի պատմական ստուգութիւնն այս կամ այն մտքով շօշափելը, հարկաւոր է նրա արդի մատենագրական առանձնայատկութիւնները պարզաբանել. այդ կարիքն ահա չի լրացրուած “Ագաթ. եւ իւր բազմադարեան գաղտնիք„ գրքին մէջ եւ նկատուած իսկ չէ, եւ այդ պատճառով անուշադիր է թողնուած։

1. Ագաթանգեղոսի ձեռագրերից ոմանց մէջ բացակայում է 11րդ եւ 12րդ անուններն ի ՃԻԱ պրակին։ Այդ պակաս վիճակով հրատարակուած է Ագաթանգեղոսի պատմութիւնը

1709 թ. ի Պոլիս, որից եւ օգտուել է Չամչեան։ Երկու անուան անյիշատակութիւնը գրչագրական տարբերութիւն չէ, այլ խորին հնութեան դրոշմ ունի, ըստ որում յունարէն Ագաթանգեղոսն եւս այդ պակաս մասով է — Տիրիկէս եւ Կիրակոս չկան թէ 1709 թ. հրատարակութեան եւ թէ յունարէն Ագաթանգեղոսի մէջ։ Արդ՝ եթէ անվիճելի ընդունինք, որ յունարէնն ի հայէ փոխադրուած է Զ—Է. դարերում, ապա ՃԻԱ պրակն իւր պակաս վիճակը ստացած պիտի համարուի աւելի վաղ։ Այդ պակասող երկու անունը — Տիրիկէս եւ Կիրակոս — Փաւստոսից գողացուած ենթադրեալ հինգ անունից երկուսն են կազմում։

2. Հայերէն գրչագրերն իրար համեմատութեամբ այնքան նշանաւոր տարբերութիւններ ունին, որ անուշադիր թողնել չի կարելի. ճիշդ է, ուրոյն ուրոյն ոչ մի ուշադրութեան արժանի լինելու վիճակին չեն արժանացած քննադատներից, բայց միասին առած, այդ տարբերութիւնները այնքան անմեկնելի են, որ բոլոր ձեռագրերը խմբերի տրոհելով միայն թերեւս կարելի լինի լուծում սպասել. օրինակ 1709 թուի եւ Վենետկեան հրատարակութիւնները տարբերւում են իրարից ոչ միայն ամբողջ հատուածների բացակայութեամբ անխտիր թէ մէկի եւ թէ միւսի մօտ, այլեւ մասնաւոր տարաձայնութիւնները իւրաքանչիւր քայլում ստիպում են մի ընդհանուր պատճառ եւ ծագում գտնել մատենագրական այդ լայնածաւալ երեւոյթի համար։

*Հրատ. 1709.*

Իններորդն Արուկէս, տասներորդն Անտիոքէս: Այսուքիկ յորդւոց քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց աճեցուցանել զքարոզութիւն աւետարանին: Եւ զայլոցն զանուանս եթէ կամեսցի ոք՝ ոչ կարասցէ թուել:

Եւ զՊաղքոս այր ճշմարիտ եւ աստուածասէր վերակացու թողոյր արքունական դրանն բանակին:

*Հրատ. Վենետկեան.*

Իններորդն Արաուկէս, տասներորդն Անտիոքէս, մետասաներորդն Տիրիկէս, երկոտասաներորդն Կիւրակոս: Այսք՝ որ յորդւոցն քրմացն ընտրեցան լինել եպիսկոպոսք կողմանց կողմանց, աճեցուցանել զքարոզութիւն: Եւ զայլոցն անուանս թէ եւ կամիցի ոք, ոչ կարասցէ շարժել: Եւ զԱղբիանոս զայր ճշմարիտ եւ աստուածասէր վերակացու թողոյր արքունական դրանն բանակին:

Այս համեմատութեան մէջ էական տարբերութիւնները ինքն ըստ ինքեան աչքի են ընկնում եւ ինչպէս եւ կամենանք մեկնել գրչագրական տարաձայնութիւնները, սակայն երկու անուան բացակայութիւնը, եւ Աղբիանոս, Պաղքոս եւ Ալքոս (Զամչեան) դուրս են որեւէ կասկածից որ օտար, տարբեր եւ անկախ աղբիւրներից միայն կարող են ծագել:

3. “Գործք Գրիգորի„ յիշատակարանի տարաձայնութիւնը աւելի հետաքրքիր է. ՃԻԱ պրակի 12 անունից այդ յիշատակարանը պահել է միայն երկու անուն. 1. Բասոս (Հայ Ագաթ. մէջ երրորդ կարգն է դասուած) եւ 2. Աղբիանոս (Հայ Ագաթ. մէջ առաջին տեղն ունի): Որ Հայ Ագաթանգեղոսից չեն առնուած այդ անունները — անկասկածելի է. եւ արդարեւ, Հայի երկրորդ անունը (= Եւթաղ) բաց թողնել, ապա երրորդ անունը ընտրել եւ կար-

դնել առաջին տեղը (= Բասոս), եւ ապա Հայի առաջին անունը դնել երկրորդ տեղը (= Աղբիանոս)։ Այս տեսակ ընտրութիւնը թէպէտ անկարելի չէ, բայց պէտք է այն ժամանակ Գրիգորի Գործքի հեղինակին ենթադրել աչքը փակած, եւ մատով ՃԻԱ պրակի վրա պտրտելիս, որպէս զի երկու անուն ընտրի այնտեղից։ Նոյն կերպ Հայ Ագաթանգեղոսի ՃԻԱ պրակը անկարելի է կարծել թէ կազմուած է այդ յիշատակարանի հետեւողութեամբ։

4. Դ դարի հայրախօսութեան վերաբերեալ շատ ցուցակներ կան, նշանաւոր տարբերութիւններով, որոնց ի մի խմբուիլը անհրաժեշտ է ՃԻԱ պրակի խնդիրը պարզելու համար։ Օրինակ, 1868 թ. էջ 103 "Արարատ"-ի ցուցակը յիշում է Աղուբիոս եպիսկոպոս Արտազու, Դանիէլ յաջորդ Աղուբիայ։ Այս երկու անունն էլ ծանօթ է Դ դարի պատմութեան մէջ. բայց էականն այն է, որ Աղբիանոս անուան բազմաթիւ ընթերցուածների վրա մի նորը աւելացնելուց յետոյ, "Արարատ"ի ցուցակը Արտազի աթոռակալ է յիշում Նրան, որ երբեմն ի կողմանս եփրատական գետոյն եւ երբեմն արքունի դրան բանակին վերակացու էր, ըստ Ագաթ. Վենետկեան հրատ.։

Բասենի եպիսկոպոսութիւնը եւս յիշուած է քանիցս եւ բազմատեսակութիւն է բովանդակում. ըստ Ս. Բարսղի՝ Բասենի եպիսկոպոս են Կիւրղոս եւ Փաւստոս, ըստ Ագաթանգեղեայ՝ Եւթաղիոս, ըստ Փաւստոսի՝ Արտիթ, Տիրիկ եւ

Մովսէս, ըստ Սոփերաց՝ Տրդատ (Զ. 26)։ Ի Ս. Գրիգորէ ցՍ. Սահակ վեց եպիսկոպոսի գոյութիւնը անհնար չէ, բայց ուշադրութեան արժանի է, որ մի յիշատակարանի մէջ պատահող անունը չի պատահում մի այլ յիշատակարանի մէջ, իւրաքանչիւրը աննման եւ իւրակերպ են հաղորդում. մասնաւոր ուշադրութեան արժանի է Սոփերքի յիշատակութիւնը. Մեսրոպ երէց, որ Ներսէսի կենսագրութեան մէջ սերտ առընչութիւն ունի Փաւստոսի պատմութեան հետ, տարբերւում է սակայն նրանից նախարարների եւ եպիսկոպոսների ցուցակների յիշատակութեամբ. այլ եւ Բասենի համար Տրդատ անունով մի եպիսկոպոս է յիշում Ներսէսի ձեռնադրութեան միջոցին, երբ ըստ Փաւստեայ պատմութեան, Դանիէլի աշակերտ Արտիթը Տիրանի օրերից սկսած Բասենում եպիսկոպոս էր։ Նոյնպէս է նաեւ Ս. Բարսղի յիշատակութիւնը Կիւրղոսի մասին, որ 370կան թուերին միակ հեղինակաւոր եպիսկոպոսն է հաղորդուած Բասենում։

## 18.

Նախորդ էջում կամեցանք արտայայտել, որ կան մատենագրական ինչ ինչ պայմաններ, որոնց դէմ աչք փակել անհնար է, երբ քննւում է ՃԻԱ պրակը. այդ մատենագրական պայմանները անբաժան են պատմական ստուգութեան խնդրից, եւ հետեւաբար ՃԻԱ պրակի ստուգութեան մասին անբաւարար է վկայելու ՃԻԱ պրակի արդի վիճակը։ Յիշեալ պայմանների ըն-

դարձակ եւ հանգամանօրէն ստորագրութիւնը միայն ոյժ եւ հեղինակութիւն ունի ՃԻԱ պրակի խնդիրը լուծելու։ Այդ աշխատութիւնը կատարելու մէջ անզօր լինելով եւ թողնելով ձեռագրական կենդրոնավայրով օժտուած անձանց այն կատարել, դրա փոխարէն հետաքրքրութիւն ունինք վեց անուան փոխառութեան խնդիրը շօշափել ներկայ էջում։

Գտնենք թէ վեց անունը[1] փաւստոսի Ջ. դպրութիւնից է անցել ի ՃԻԱ պրակն. տեսնենք այն ժամանակ՝ մատենագրական հնարաւորութեանց հետ շաղկապուած պիտի լինի՞ փոխառութիւնը, թէ ոչ։ Պատասխանը բացասական է՝ ըստ հետեւեալի։

1. ՃԻԱ պրակի վեց անունը ի Ջ. դպրութենէ մուրացեալ նկատելուց յետոյ՝ մնացած վեց անունը՝ առանց Աղբիանոսի, Նիկիական հարց անուանացուցակից է ենթադրուած։ Եւ այդպէս էլ դիտելով, տեսնում ենք որ Նիկիական հարց ցուցակի անունները նախակարգուած են Ջ. դպրութեան անուններից. առաջիններն ունին (1) 2, 3, 5, 7, 10 կարգը, իսկ վերջինները 4, 6, 8, 9, 11 եւ 12։ Այդպէս վարուող խմբագրողը այդ կարգաւորութիւնը պիտի պահպանէր նաեւ երբ ենթադրեալ աղբիւրներից էր օգտւում նա. բայց տեսնում ենք որ ամենեւին այդպէս չէ. Ջ. դպրութիւնից ընտրուած է ՃԻԱ պրակի համար Կիրակոս, Մով-

[1] Հ. Բ. Վ. Սարգսեան դասել է «Ասպուրակես» (Ջ. 4) = «Ասուրկես» (ՃԻԱ)։

մէս, Տիրիկ, Ցոհան եւ Ասպուրակ աննշան անունները, բաց թողնելով Զաւէն, Շահակ Փաւստոս, Զորթ, Առոստոմ, որոնք կամ ծերունի կամ նախապատիւ վիճակ ունին, ըստ Զ. դպրութեան։ Այնուհետեւ աւելի է հանդիսանում անհետեւողականութիւնը. Ցոհան կեղծաւոր, ագահ եւ անարժան եպիսկոպոսի անունը Զ. դպրութիւնից փոխ է առնուած ՃԻԱ պրակի համար, մինչ Փաւստոս, Զորթ, Առոստոմ անունները անուշադիր են մնացած եւ նոյն կեղծաւոր Ցոհանին ընդօրինակելուց յետոյ, նրան նախապատիւ դիրք է յատկացրած Նիկիական հարց երկու անունից եւ Ասպուրակէսից ու Արտիթից, որոնք Զ. դպրութեան մէջ Ցոհանից նախադաս են։ — Այս մանր շեղումները թերեւս նկատուին խմբագրողի առանձին ջանքի արդիւնքը, որպէս զի աղբիւրից հեռանայ նա եւ գողութիւնը չնշմարուի. բայց այդ ճիշդ չէ. Ագաթանգեղոսի խմբագիրը միամիտ ոմն է ներկայանում Հ. քննադատի գրչի տակ. բաւական է յիշել, որ այդ խմբագիրը ինքնախաբութեան մէջ է ընկել 117 տարուայ պատմութիւնը ամբողջապէս միակ եւ ժամանակակից կամ ականատես հեղինակինը հասկանալ թոյլ տալով, ըստ յառաջաբանին եւ վերջաբանին։ Հնարաւոր է կարծել նաեւ, որ Ագաթ. խմբագրողը մտադրուած լինելով միայն թեմակալ եպիսկոպոսներին յիշել, բաց է թողել Զ. դպրութիւնից Զաւէն, Շահակ, Փաւստոս, Զորթ եւ Առոստոմ՝ իբր ոչ թեմակալներին. բայց այդ

սխալ մեկնութիւն է. հետեւողական կարգով, պէտք է Ցոհան եւս չյիշուէր, Ասպուրակ՝ նոյնպէս, որոնք սակայն յիշուած են ՃԻԱ պրակի մէջ։ Այն էլ կայ՝ որ այդ մեկնութիւնը ընդունելուց յետոյ, այլ եւս մեկնել անհնար է, թէ ինչու Զ. դպրութիւնից բաց են թողուած Զորթուաղ եւ Ահարոն՝ Վանանդի եւ Արշակունեաց թեմակալ եպիսկոպոսները։

2. ՃԻԱ պրակի մէջ հեղինակը յայտնելուց յետոյ, որ 12 եպիսկոպոսները գաւառաց գաւառաց տեսուչներ էին, այնու ամենայնիւ բաց է թողել, թէ ո՛ր գաւառի տեսուչներ էին նոքա. միայն Աղբիանոսի եւ Եւթաղիոսի թեմերն են յիշուած։ Արդ՝ ուշադրութեան արժանին այն է, որ ՃԻԱ պրակի մէջ Եւթաղիոս էր Բասենոյ հովիւ, իսկ ըստ Զ. դպրութեան՝ այդ կողմերի եպիսկոպոս էին Արտիթ, Տիրիկ եւ Մովսէս։ Պէտք է կարծել ուրեմն, որ Եւթաղիոսին յիշելով՝ իբրեւ Բասենոյ եպիսկոպոս, խմբագրողը փոյթ է ունեցել միանգամայն ջնջել իւր աղբիւրի՝ այն է Զ. դպրութեան հետքը. բայց այդ սխալ է. այդ միտումն ունեցող հեղինակը լռութիւն չէր պահել եւ անմիջապէս Արտիթին, Տիրիկին եւ Մովսէսին այլեւայլ թեմերի հովիւ կը նշանակէր, որպէս զի Զ. դպրութեան եւ իւր գործքի մէջ ամենեւին աննմանութիւն տեսնուէր։

3. Անմեկնելի է նաեւ թէ ինչու 12 անուան փոխառութիւնը կցկցեալ պայմանների մէջ է հանդիսանում, վեցը Զ. դպրութիւնից, հինգը Նիկիական հարց անուանացուցակից եւ

1ը անյայտ աղբիւրից, մինչ Զ. դպրութեան մէջ յիշուող 12 եպիսկոպոսներին ի Ս. Գրիգորէ ձեռնադրուած համարելու դէմ ոչ մի ակնարկ չկայ եւ նրանց փոխառութիւնն ամբողջապէս հնարաւոր է այնքան, որքան է միայն վեցի փոխառութիւնը։ 12 անունը ամբողջապէս խմբագրողը չի վերցրել նաեւ Նիկիական հարց անուանացուցակից։ Այս վերջինիս համեմատութիւնը աւելի նիւթ է շնորհում անհնարաւորութիւն նկատելու փոխառութեան վերաբերմամբ. Նիկիական ցուցակի մէջ փոքր Հայքի եպիսկոպոս են յիշուած Եւթաղիոս եւ Եւթիոս, իսկ Մեծ Հայքի — Արիստակէս, Ակրիտէս — ի Պէէնպողէ, Եւտիքիանոս ի Ցամասէ, Հեղպեդիոս, եւ Հերակղիոս ի Ջեղոնէ։ Այդ բոլորից միայն Եւթաղիոսն է յիշուում ՃԻԱ պրակի մէջ։ Արդ՝ թէկուզ գողացող լինէր արդի Ագաթանգեղոսի հրաշակերտողը, այնու ամենայնիւ ամենից շատ Մեծ ու Փոքր Հայքի եպիսկոպոսների անունները սպասելի էր տեսնել Նիկիոյ հարց ցուցակից գողացուած եւ ոչ թէ նրանց թողած՝ բոլորովին օտար անձանց եւ օտար տեղեաց եպիսկոպոսների անունները։ Չենք կարող չնկատել նաեւ որ 1. Նիկիական ցուցակից մուրացեալ ենթադրուած հինգ անուան դիրքը ՃԻԱ պրակի եւ աղբիւրի համեմատութեան մէջ այլընդայլոյ է, անհամապատասխանող կարգ եւ յաջորդականութիւն ունին նոքա մէկ եւ միւս տեղ։ 2. “սխալ ընթերցմունքը, ըստ Հ. Տաշեանի, չափազանց շա՛տ են„ եւ այդ պատճառով

Նիկիական ցուցակի. եւ ՃԻԱ պրակի առընչութիւնը ձգձգեալ մեկնութեամբ է հաստատւում։ Այդ պայմանները, սակայն, եթէ չեն խանգարում ՃԻԱ պրակի փոխառութիւնը ի Նիկ. հարց ցուցակէն նկատելուն, ապա պէտք է Եւսեբիոսի եկեղեցական պատմութիւնը եւս աղբիւր նկատել այն անունների փոխառութեան համար, որոնք ՃԻԱ պրակի մէջ մուրացեալ են նկատուած միանգամայն թէ Նիկ. հարց ցուցակից եւ թէ Զ. դպրութիւնից, ըստ որում ՃԻԱ պրակի մէջ յիշուած անուններից հինգը յիշուած կան նաեւ Եւսեբիոսի եկեղ. պատմութեան մէջ։[1] Արդ՝ ինչո՞ւ Նիկիական ցուցակից եւ ոչ թէ Եւս. եկեղ. պատմութիւնից, կամ ինչո՞ւ ընդհակառակը՝ փոխառած ենթադրել ՃԻԱ պրակի ցուցակը։

Ամփոփելով, տեսնում ենք, որ որքան անհիմն է ՃԻԱ պրակի կցկցումը ի Զ. դպրութենէ եւ ի Նիկ. հարց ցուցակէ նկատելը, նոյնքան հիմնաւոր է ՃԻԱ պրակի հիմքը ինքնուրոյն աղբիւր ենթադրել։ Մի խօսքով վիճելի, եւ անորոշ վիճակի մէջ է հանդիսանում ներկայ խնդիրը։

## 19.

Այն, ինչ որ Զ. դպրութեան մէջ մնացել է, եւ կարող է ծառայել Զ. դպրութեան յետին ժամանակում կցկցուած լինելը նկատելուն, աշխատեցինք նախորդ էջերում հանդէս

---

1 Է. 32, Դ. 5. Զ. 43։

հանել. այնտեղ ցուցումներն, որով դատուած են Փաւստոսի պատմութեան արդի վիճակը, նոյն Փաւստոսի պատմութիւնից առանք առհասարակ, եւ ամէն անգամ զգոյշ եղանք՝ չընդարձակուել այն հարցերի սահմաններում, որոնք Փաւստոսի պատմութեան բնագրին են նայում, եւ որոնք նկատողութիւններիս Բ. մասի նիւթը պիտի լինեն: Այժմ, դեռ չփակած ներկայ էջը, Զ. դպրութեան լինելու չլինելու խնդիրը պարտ ենք յանձնել Ղազար Փարպեցու յիշատակարանի հեղինակին դատելու նոյն վերոգրեալ զգուշութեամբ:

Փաւստոսի պատմութեան նախագիտելուց եւ Զ. դպրութիւնից յետոյ, մեր յարուցած հարցի համար նշանակութիւն ունի Ղազարի պատմութեան յառաջաբանը, ուր յիշուած են 1. Փաւստոսի պատմութեան բովանդակութիւնը. 2. Փաւստոսի նախորդ եւ յետնորդ պատմութիւնները եւ 3. Փաւստոսի պատմութեան աղաւաղումը: Բայց նախ քան այդ նշանակութիւնը դիտելը, աւելորդ չէ կանգ առնել քանի մի խնդիրների վրայ, որոնք Ղազարի յառաջաբանի հարազատութեան են նայում, եւ ապա թէ գիտակցօրէն ծառայեցնել այն Փաւստոսի յիշատակարանի քննութեան:

Հինգ պրակի մէջ է տրոհուած Ղազարի պատմութեան յառաջաբանը: Բանասէրները արդէն նկատել են, որ վերջին չորս պրակի ինչ ինչ մասերը կրկնուած են Ա պրակի մէջ, եւ որ վերջին պրակները անյարիր մասեր ունին եւ

ընդհանրապէս սրբագրութեան եւ խմբագրութեան են կարօտում։ Ղորինորդ սրբագրութիւնը, բանասէրների ցուցմամբ, կատարուած է մասամբ վերջին հրատարակութեան մէջ, բայց դեռ ոչ ոք պարզած է չարժառիթը, որով Բ—Ե մասերը համառօտուած են Ա մասի մէջ։ Եւ եթէ Ա պրակը վերջիններից է քաղուած, այն ժամանակ անպատասխան է մնում թէ ինչ նպատակ ունէր այդ քաղուածքն անել, որ թերի է, եւ թէ ինչու այդպիսի քաղուածքը նախադասուած է այն աղբիւրից, որից քաղուել է այն՝ այն է Բ—Ե պրակներից։ Պարզուած չէ նաեւ, թէ արդեօք նոյն եւ մի° հեղինակի գործն են այդ հատուածները՝ թէ տարբեր, եւ եթէ նոյն՝ ապա անմեկնելի է մնում, թէ Ա պրակը թերի համարելով, եւ ընդարձակ ու մանրապատում լինելով Բ—Ե պրակների մէջ, ինչու հեղինակը չոչնչացրեց Ա պրակը։ Մի խօսքով ենթադրուած է, որ Ա պրակը ծնունդ է ի ծոցոյ Բ—Ե պրակների, եւ որ վերջին պրակներն առաջինի համեմատութեամբ հարազատագոյն եւ արժանահաւատ են. իսկ մնացած խնդիրները կարօտում են հանգամանօրէն քննութեան։

Մենք բոլորովին այլ կարծիք ունինք այդ պրակների ծագման եւ նշանակութեան մասին։

Ա. Ընդունուած կարծիք է, որ Ղազարի պատմութիւնը գրուած է Վահանի հրամանով եւ 490—500 թուերին. այդ խնդրի մասին յառաջաբանի Ա եւ վերջին մասերը որոշ

ցուցումներ ունին, որոնց համեմատութիւնն այլիմաստ եզրակացութեան է առաջնորդում մեզ։

Պրակ Ա.

Երրորդ պատմութիւնս այս ի կարգէ նորին գրոց շարադրեալ տկարութեանս մերում. յոր հարկաւորեալ հրամանաւ իշխանաց եւ բանիւ սուրբ վարդապետաց, տուաք զանձինս յայսպիսի գործ կարեւոր։

Պրակ Ե.

Եւ արդ՝ այսպէս հարկաւորեալ բռնադատեաց զտկարութիւնս մեր աէրն Մամիկոնէից Վահան, սպարապետն Հայոց եւ մարզպան, ձեռնարկել ի գործ՝ որ ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր։

Այս համեմատութեան մէջ ոճի նոյնութիւնն ակնյայտնի է, բայց այդտեղ իմաստի տարբերութիւնն եւս անհնար է չնկատել. պատմութիւնը, ըստ Բ պրակի, գրուած է իշխանների հրամանով եւ վարդապետների յորդորով, իսկ ըստ Ե պրակի միակ Վահանն է բռնադատել գրել պատմութիւնը։ Բ—Ե պրակների մէջ Վահանի բռնադատութիւնն երեք անգամ յիշուած է, բայց եւ ո՛չ մի դէպքում՝ ո՛չ վարդապետների եւ ո՛չ իշխանների մասին յիշատակութիւն կայ, իսկ Ա պրակի մէջ Վահան անունը, իբրեւ բռնադատող ոմն ի գործ, բացակայելով բացակայում է։

Պիտի նկատենք, որ Ա եւ Բ—Ե պրակներն երկիմաստ տարբերութիւն ունին. 1. տարբերութիւններ, որոնցով այդ երկու հատուածների իմաստն ընդհարւում է իրար հետ. եւ 2. տարբերութիւններ, որոնք միայն այս կամ այն հատուածի յատուկ են, առանց մէկը միւսի իմաստը ժխտելու։ Երկրորդ տեսակից են օրի-

նակ այն, որ Ա պրակի մէջ հաղորդուած է, թէ որտեղից պիտի հեղինակն սկսի իւր պատմութիւնն եւ ուր պիտի դադարի. նաեւ թէ ինչ շրջան պիտի պատմի նա. այս տեղեկութիւնները չկան երկրորդ հատուածի մէջ՝ Բ—Ե։ Դրա փոխարէն Բ—Ե պրակների մէջ մանրամասն ստորագծուած է Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի մատենագրական եւ պատմական արժէքը. եւ շեշտուած է պատմիչի կոչումը — տեղեկութիւններ, որոնք Ա պրակի մէջ բացակայում են։ Այսպիսի եւ այս բոլոր տարբերութիւնները ոչ մի հիմք չեն ներկայացնում երկու տարբեր հեղինակներ ենթադրել Ա եւ վերջին պրակների համար. նրանք կարծես այդ առանձնայատուկ մասերով միայն իրար լրացնում են եւ ուրիշ ոչինչ։ Բայց այդպէս չէ առաջին տեսակի տարբերութիւնը, որի օրինակն երեւում է մեր առաջադրեալ համեմատութիւնից. մի հեղինակ, որ Բ—Ե պրակների մէջ երեք անգամ երեք էջից աւելի ծաւալով յիշում է Վահանին՝ իբրեւ իրեն բռնադատողի ի գործ, այդ հեղինակն իբր՝ Ա պրակի մէջ յիշում է անանուն իշխաններ եւ բաց ի այդ նոյնպէս անանուն վարդապետներ, որոնց հրամանով եւ յորդորով նա ձեռնարկել է գրելու իւր պատմութիւնը։ Տարբերութիւնն ակնյայտնի է եւ միեւնոյն ժամանակ մատնում է տարբեր հեղինակի ներկայութիւնը։

2. Ա. պրակի մէջ հեղինակն իւր աշխատութիւնը պատմական գրքերի մէջ երրորդտեղն է դասում, առանձին առանձին յիշելով

Նախորդ երկու պատմիչներին Ագաթանգեղոսին եւ Փաւստոսին։ Այդ տեղեկութեան միանգամայն հակառակն է աւանդուած Փաւստոսի պատմութեան Գ. 1—2 գլ. մէջ, ուր Փաւստոսի պատմութիւնն եւս երրորդն է կոչուած պատմական գրքերի շարքում, կոչելով Ագաթանգեղոսի պատմութիւնն երկրորդ, իսկ Թադէի Վարդապետութիւնն առաջին։ Կը նշանակէ Ա պրակի հեղինակին ծանօթ չէր Փաւստոսի պատմութեան Գ. 1—2 գլ., ապա թէ ոչ այդ հեղինակն իւր պատմութիւնն էլ երրորդ չէր կոչիլ, այլ չորրորդ, իբրեւ Փաւստոսի նախորդ պատմիչը։ Այդ բոլորն ընդարձակ նկատողութիւնների է կարօտում՝ քննելու Թադէի Վարդապետութեան ծագման եւ գոյութեան հարցը, Փաւստոսի Գ. 1—2 գլ., Փաւստոսի եւ Ագաթանգեղոսի պատմութեանց խմբագրութիւնն, եւ այլն. այդ խնդիրները մենք կը լծորդենք “Նկատողութիւններիս„ երրորդ մասի մէջ հայ մատենագրութեան այն վիճակի նկարագրի հետ, որ ժամանակակից էր Փաւստոսի պատմութեան խմբագրութեան։ Այստեղ շարունակենք նկատել, որ Ղազարի Ա պրակի մէջ այլեւայլ կոչումներ ունին Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի պատմութիւնները. արդի “Ագաթանգեղեայ պատմութիւնը„ այնտեղ յիշւում է “յորոյ անուն եւ զգիրսն անուանեալ կոչեն Գրիգորիսի„. եւ արդի “Բիւզանդարան պատմութիւնք„ այնտեղ յիշւում է “զոր անուանեալ կոչեն զանուն գրոցն՝ Հայոց պատմութիւն։„ Այսպէս ու-

րեմն Ա պրակի մէջ Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի պատմութիւնները յիշուած են տարբեր դիրքով եւ անուններով այն վիճակից, որ նրանք ունին ներկայումս։

Արդ՝ այդ տարբերութիւններն ինչպէս են փոխանցուած ի Բ—Ե պրակս. ահա էական խնդրելին. եթէ Ա եւ Բ—Ե երկու հատուածները նոյն եւ մի հեղինակի գործերն են, անշուշտ այդ տարբերութիւնները պիտի տեսնէինք եւ Բ—Ե պրակների մէջ, ուր յիշուած է Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի պատմութեանց բովանդակութիւնը։ Բայց այդպէս չէ. Բ—Ե պրակներն անթերի եւ անշեղ կերպով յիշում են Ագաթանգեղոսի պատմութեան բովանդակութիւնը նրա արդի վիճակով, իսկ Փաւստոսի պատմութիւնն արդէն աղաւաղուած բովանդակութեամբ՝ “անհաճոյ լողաց բանք„ բնաւորութիւնով։ Պարզ է այս տեղից ուրեմն, որ նոյն եւ մի հեղինակը չէ որ յառաջաբանի Ա եւ Բ—Ե մասերի մէջ վարուել է թէ՛ մէկ եւ թէ՛ միւս կերպ. Ա պրակի մէջ յիշել Ագաթանգեղոսին եւ Փաւստոսին, իբրեւ Ա եւ Բ պատմիչներ, յիշել նրանց գործքերը “Գիրք Գրիգորիսի„ եւ “Հայոց պատմութիւն„ վերնագրով, եւ միեւնոյն ժամանակ Բ—Ե պրակների մէջ յիշել այդ գրքերի բովանդակութիւնն այնպէս, ինչպէս նրանք ունին նոր վերնագրերին եւ խմբագրութեան ենթարկելուց յետոյ՝ արդի վիճակի մէջ։ Այլ՝ որ Ա եւ Բ—Ե պրակները տարբեր անձանց եւ ժամանակների գործեր են. այդ

ժամանակաշրջաններն իրարից բաժանում են մի անջրպետով, ուր՝ տեղի է ունեցած Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի պատմութեանց խմբագրութիւնը։

3. Ա պրակի հեղինակին ծանօթ են երկու ազգային պատմական երկ միայն՝ Գիրք Գրիգորիսի եւ Հայոց պատմութիւն։ Այդպէս աղքատ չէ վերջին պրակների հեղինակին ծանօթ պատմական գրականութիւնը, որը դեռ որակաւորուած էլ է 1. իբրեւ հաւաստի եւ արժանաւոր յիշատակարաններ եւ 2. իբրեւ անստոյգ պատմութիւններ։

Նախ՝ հաւաստի պատմութիւնները յիշուած են այս բազմաւորութեամբ. "ընդ բազում ճառս մատենից առաջնոց պատմագրացն Հայոց անցի. որչափ եւս առաւել գտանիցին գանձուն յաւիտենից ժառանգաւորք, որք եւ զյօրինուածս բանից ստուգապատում կարգել պատմագրեցին, չառնել մարդահաճութեան բանից յաւելուածս, այլ զգուշական երկիւղիւն ընդ բազմաց լայնածաւալս գիտնական բանիւ նաւեցին անվթար" (պրակ Բ)։ Ուշադրութեան արժանին մանաւանդ այն է, որ այդ տողերի հեղինակը Փաւստոսի երկն աղաւաղուած եւ անստոյգ է դատում եւ արժանահաւատը լոկ Ագաթանգեղոսի գիրքն է համարում. ուրեմն էլ որ ստոյգ պատմութիւններն ի նկատի ունի — գտանիցին, պատմագրեցին, նաւեցին եւայլն ձեւերի տակ հեղինակը, եթէ դա Ա պրակի մէջ լոկ երկու պատմական երկի մասին ծանօթութիւն ունեցող հեղինակն է։

Երկրորդ՝ անստոյգ պատմութիւններն եւս բազմաթիւ էին Բ—Ե պրակների հեղինակի ժամանակ. «Բազումք սպրդեցին գալ յայսպիսի յայրատութիւնս արք ոգէտք եւ յանդգունք, գրեցին յինքեանց ճառս ընդունայնս եւ անպիտանաբանս եւ խառնեալ եդին ի գիրս գիտուն լողաց. Թէպէտ եւ ընտրող մտաց ճանաչի յայտնապէս գիտողն բանք եւ անմտացն շաղփաղփութիւնք։»

Պարզ է, որ Բ—Ե պրակների այս տողերը միաձայնութիւն չունին Ա պրակի հետ. այլեւ, որ երկու վիճակն եւս միաժամանակ լինել չէին կարող — մէւ հարուստ պատմական գրականութիւն՝ ստուգապատում եւ անհաւաստի պատմութիւններով, մէւ աղքատիկ մի գրականութիւն՝ ընդ ամէնն երկու յիշատակարանով։

Աւելացնենք, որ զուգադէպ իմաստով, Բ—Ե մասերի մէջ հեղինակն Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի գրքի քննութեամբ ցոյց է տալիս իւր ժամանակակից գրական ճաշակի նրբութիւնն եւ քննասիրական ոգին. այդ հանգամանքն ինքնին վկայ է, որ մատենագրութեան ծաղկման եւ հարստութեան շրջանի արդիւնքն են թէ Բ—Ե պրակներն եւ թէ նրա հեղինակը. եւ դրան հակառակ բնաւորութիւն ունի Ա պրակը՝ իբրեւ անպաճոյճ եւ պարզ մի շարադրութիւն, ազատ քննասիրական որեւէ հայեացքից։

Ահա այն երեւոյթները[1], որոնք ստիպում

---

1 Մենք այլ եւս ունինք ինչ ինչ նկատողութիւններ, որոնք ակնարկում են Ղազարի պատմութեան յետին

են մեզ Բ—Ե պրակները յետին ժամանակի գործ դատել եւ հնութեան կողմը՝ համեմատօրէն Ա պրակի մէջ որոնել։

## 20.

Այժմ դառնալով այն խնդրին թէ Ղազարի յառաջաբանի մէջ ինչպէս է հաղորդւում Փաւստոսի նախորդ եւ յետնորդ պատմական յիշատակարանների սկիզբն ու վախճանը, մենք կը թողնենք այն հարցը թէ Փաւստոսի յիշատակարանի սկիզբը ո՛ր պատմական իրողութիւնը պիտի ընդունել. այդ հարցին մենք կը դառնանք իւր տեղը. այս էջում կ'ընտրենք մի միայն Ղազարի պատմութեան սկսուածքի եւ Փաւստոսի պատմութեան վախճանական խնդիրները։

Ղազարի պատմութեան յառաջաբանի արդի ամբողջութեան մէջ մի անգամ է միայն յիշուած թէ Փաւստոսի պատմութիւնն ո՛ւր է դադարած եւ թէ ինքը Ղազար ո՛րտեղից պիտի սկսի շարունակել իբրեւ Փաւստոսի յաջորդը։

---

խմբագրութիւնը, սակայն ներկայ էջին միանգամայն անյարիր են նոքա. ամենամեծ հատուածը, որ ներմուծուած է թւում մեզ, է Ս. Սահակի գործունէութեան նկարագիրն ամբողջովին։

Ե. դարի պատմական յիշատակարաններից միայն Ղազարինն էր մնում, որ ցայժմ անշարժ էր իւր ծագման խնդրում։ Սակայն բաց ի մեր գիտողութիւններից, արդէն իսկ ուղղուած է գիտակից քննադատների հայեացքը Ղազարի պատմութեան եւս, եւ խոստացուած են տարբեր անձինքներից այդ մտքով հետազօտութիւններ, որոնք Ղազարի արդի յիշատակարանի յետին դարերի խմբագրութեան հարցն են շօշափում (“Հանդէս Ամս„ 1898 էջ 255 Հ. Գ. Մէն. եւ 278/9 — Կ.)։

Երկու տեղեկութիւնն եւս յառաջաբանի Ա մասի մէջ ենք գտնում։ “Երրորդ՝ պատմութիւնս այս ի կարգէ Նորին գրոց շարադրեալ տկարութեանս մերում. յոր հարկաւորեալ հրամանաւ իշխանաց եւ բանիւ սուրբ վարդապետաց, տուաք զանձինս յայսպիսի գործ կարեւոր, չիշխեցեալ ընդդիմանալ. յիշելով ի սուրբ գրոց զսպառնալիսն անհնազանդից որդւոցն, եւ զորս գրէ՝ ներողութիւն հնազանդից եւ հաւանելոց. կարգել մի ըստ միոջէ զիրս եւ զգործս, զբազմայեղանակ դիպմունս Հայաստան աշխարհիս, բաժանմանց յերկուս Թագաւորութիւնս. եւ ի վիճակէ բաժնոյ անօրինացն„ եւայլն։ Ըստ այս հատուածի, Ղազարի պատմութեան սկիզբն է Արշակի եւ Խոսրովի երկուստեք տիրապետելու պատմութիւնը, կցուած բաժանման պարագաներին. ճիշդ այդպէս սկսւում է Ղազարի պատմութիւնը. Գլուխ Զ. “Եւ ի բաժանելն զթագաւորութիւն Արշակունւոյն յերկուս, առ ի հնազանդեցուցանել զկողմն արեւմտից աշխարհիս Հայոց՝ թագաւորին Յունաց՝ ընդ իշխանութեամբ իւրոյ տէրութեանն, եւ զկողմն արեւելից՝ խոնարհեցուցանելով դառն եւ բռնաւոր ծառայութեամբ՝ արքային Պարսից. — երթեալ այնուհետեւ նախարարացն Հայոց ի վիճակէ մասին արքային Պարսից, խնդրէին իւրեանց թագաւոր ըստ բնիկ նախնի կարգին յազգէն Արշակունեաց։ Եւ արքային Պարսից Շապհոյ կատարեալ զհայցուածս նոցա՝ շնորհէր նոցա թագաւոր Խոսրով անուն յազգէն Արշակունեաց։

«Քանզի նախգոյն թագաւորն Հայոց Արշակ ունէր միահեծան զթագաւորութիւնն ի վերայ ամենայն աշխարհիս Հայոց։ Իբրեւ եւտես թէ խախտեալ եւ քայքայեալ մատնեցաւ ի բաժանումն մեծ իշխանութիւն թագաւորութեան ազգին իւրեանց, մեծաւ տրտմութեամբ խռովեալ տարակուսէր յանձն իւր.» եւն։

Այսպէս ուրեմն Ղազարի պատմութեան սկիզբը նրա յառաջաբանին միանգամայն համապատասխանում է. այդ սկիզբն է՝ Արշակունեաց իշխանութեան բաժանման պատմութիւնը։ Հետեւաբար, եզրակացնում ենք, որ Ղազարի նախորդ պատմիչը շարունակել է պատմութիւնը մինչեւ այդտեղ, եւ իշխանութեան բաժանումը թողել է պատմել յետագային. մեր այդ եզրակացութիւնը Ղազարի յառաջաբանը հաստատում է դրական մտքով այսպէս. «պատմեալ զայս ամենայն փոստոս ումն Բիւզանդացի, մինչեւ ցթագաւորութիւնն Արշակայ» (պրակ Ա)։

Այս բոլորի վրայ հիմնուած պիտի հասկանայինք, որ Փաւստոս պատմել է մինչեւ Արշակի թագաւորելը, եթէ՝ նման շատ օրինակների, նոյն իսկ հասած չլինէր մեր ձեռքը Փաւստոսի պատմութիւնը, եւ ոչ մի հիմք չէինք ունենալ կարծելու, թէ Փաւստոս պատմել է նաեւ Խոսրովի թագաւորելը. բաժանման իրողութիւնն այնքան նշանաւոր է, որ այն անյիշատակ թողած՝ Ղազար չէր յիշել «մինչեւ ցթագաւորութիւնն Արշակայ», եթէ ի հարկէ Փաւստոս արդարեւ պատմած լինէր բաժանման

պատմութիւնն եւս։ Ղազար այն ժամանակ կը սահմանէր Փաւստոսի յիշատակարանի համար — “մինչեւ ցբաժանումն իշխանութեան Արշակունոյն։„ Բաց ի այդ, “մինչեւ ցթագաւորութիւնն Արշակայ որդւոյ Տիրանայ„ խօսքերին կից, մի ընդարձակ բացատրութիւն ենք գտնում այն մասին՝ թէ ով էր այդ Արշակ — Տրդատի թոռը թէ մի ուրիշը. այդ այն Արշակն էր, “առ որով թագաւորութեամբ բաժանեալ աշխարհս Հայոց՝ պատառեցաւ յերկուս ծուէնս։„ Արդ՝ եթէ այս մեկնութիւնը յետին դարերի սովորութեամբ լոկ լուսանցքի յաւելումն չէ, ապա պէտք է ընդունել, որ այդ նպատակաւոր մեկնութիւնն ինքեան ապացոյց է այն բանի, թէ հեղինակը գիտակցաբար տարբերել է, իբրեւ տարբեր իրողութիւններ, Արշակի թագաւորելը իշխանութեան բաժանումից եւ այդ մտքով Փաւստոսի պատմութեան վախճանական սահմանը նշանակել է ցթագաւորութիւնն Արշակայ որդւոյ Տիրանայ եւ ոչ թէ “ցբաժանումն աշխարհիս Հայոց եւ ցպատառումն յերկուս ծուէնս։„ [1]

---

1 Անհիմն է առարկել, թէ պատմական գրականութեան զարգացման որոշ աստիճանի արդիւնքն է, որ Ղազար անձնաւորութեան գահակալութեամբ եւ ոչ թէ պատմական յայտնի իրողութեամբ է սահմանել Փաւստոսի պատմութեան վերջնական սահմանը. որովհետեւ Ղազար իւր պատմութեան սկիզբը սահմանում է այլ եւս ոչ թէ Արշակի անունով, այլ իշխանութեան բաժանման իրողութեամբ։ Յիշենք այլ եւս, որ Ղազար խիստ եւ բառացի կերպով հաւատարիմ է իւր սահմանումներին. իւր պատմութեան վերջնական սահմանը նշանակելով ուղիղ այն օրը, երբ Վա-

Համեմատելով Ղազարի յառաջաբանի որոշումները փաւստոսի պատմութեան արդի վիճակի հետ, տեսնում ենք նախ "պատմեալ զայս ամենայն մինչեւ ցթագաւորութիւնն Արշակայ որդւոյ Տիրանայ„ խօսքերի իմաստը, որով Ղազար սահմանել է փաւստոսի պատմութեան վախճանական կէտը, այդ խօսքերի իմաստը չի նայում Զ. 16ին, այլ Ե. 44, այն է վերջին գլխին, ուր կարդում ենք — "Ապա յետ այսորիկ դարձեալ ի մի վայր ժողովեալ զաշխարհ ամենայն զմարդիկ երկրին Հայոց եւ թագաւորեցոյց (Մանուէլ) զմանուկն զԱրշակ երկրին Հայոց եւ Վաղարշակ երկրորդ նմին։„ Երկրորդ՝ Ղազարի "բաժանմանց յերկուս թագաւորութիւնս„ խօսքերի իմաստը, որով Ղազար սահմանել է իւր աշխատութեան սկիզբը, այդ խօսքերի իմաստը նայում է Զ. 1 գլխին — "Եւ հաստատեցին զայս խորհուրդ. ընդ երկուս զաշխարհն բաժանեցին. բաժին կողմանն Պարսից էր թագաւորին Խոսրովու, եւ բաժին մասինն Յունաց էր թագաւորին Արշակայ։„

Համաձայն այս բոլորի Զ. 1 գլուխը Ղազարի յառաջաբանի հեղինակին յայտնի չէ, եւ դուրս է մնում նոյն յառաջաբանի այն որոշումից թէ փաւստոսի պատմութիւնը վերջանում էր Արշակի թագաւորելով այն է արդի Ե. 44 գլխով։

Ի վերջոյ յիշենք, որ փաւստոսի պատմութեան նախագիտելուց օգտուել է Ղազարի

---

հան մարզպանութիւն ստացաւ ի Հայս, գադարել է նա պատմելուց ոչ առաջ եւ ոչ յետոյ քան այդ իսկ օրը։

յառաջաբանի Ա պրակի հեղինակը. բայց նա բանաքաղ է ուրիշ նախագիտելու առաջին հատուածից. այդ այն հատուածն է, որը սահմանում է միայն Գ, Դ, Ե. դպր. գրութիւնը, առանց Զ. դպրութեան. ահա համեմատութիւնը.

| Պրակ Ա. | Նախագիտելի: |
| --- | --- |
| Զիրս բազմափոփոխս աշխարհիս Հայոց, զբարեաց եւ պչարեաց, զվարս եւ զգործս զարանց սրբոց եւ զպղծոց, զժամանակի պատերազմաց եւ զխաղաղութեան. պատմեալ զայս ամենայն Փաւստոս ոմն Բուզանդացի, մինչեւ ցթագաւորութիւնն Արշակայ: | Կարգ անցելոց իրաց գործք եւ վարք մինչեւ ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս քահանայապետաց սրբոց արանց Աստուծոյ, եւ թագաւորաց տէրանց աշխարհաց Արշակունեաց եւ զօրավարաց արանց անուանեաց քաջ նախարարաց եւ խաղաղութեան եւ պատերազմին եւ շինութեան եւ աւերածոյ եւ արդարութեան եւ անօրէնութեան եւ աստուածպաշտութեան եւ ամբարշտութեան: |

Այս կերպ ուրեմն, Զ. դպրութիւնն ամէն անգամ հանդիսանում է իբրեւ "ի ծայրէ կցուած, մնացուածք բանից." ի ծայրէ այն պատմութեան՝ որը վերջանում էր Ե. 44րդ գլխի բովանդակութեամբ:

Զ. դպրութեան անհարազատ լինելու մասին Փաւստոսի պատմութեան գրականութիւնից արժան է հետեւեալը մատնանիշ անել, իբրեւ իւր տեսակի մէջ միակ նկատողութիւն. "Մանաւանդ կասկածելի է Զ. դպրութիւնն կամ երրորդ գիրքը, որ պատմութեան շարունակութիւնը չէ, այլ զուարճալի եւ շատ սակաւ օգ-

տակար տեղեկութիւնների մի հաւաքածու է, անկապ շարայարուած։ Անշուշտ Բուզանդարանում կար մի վեցերորդ դպրութիւն, որ շարունակութիւն էր պատմութեան, սակայն շատ կասկածելի է, որ այդ է մեր ձեռն հասածը (“Արձագանք„ 1890, թիւ 6, Ն. Քարամեան)։



# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Ա. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Ուսումնասիրութիւնք Լեհահայոց դատաստանագրոյն: 1. Պիշոֆ, Լեհահայոց հին իրաւունքը: 2. Գոլէր. Իրաւունք Հայոց: 1890: 8° Երես՝ 85+59: Ֆր. 1.25

Բ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ, Ազգաբանութիւն ազնուական զարմին Տիւզեանց. (պատկերազարդ:) 1890: 8° Երես՝ 50: Ֆր. 1.—

Գ. Տաշեան Հ. Յակովբոս, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսին եւ ուսումնասիրութիւն Ագաթանգեղեայ գրոց: 1891: 8° Երես՝ ԺԱ+159: Ֆր. 1.25

Դ. Դեմետրիոս Տաձի Արեւելեան Հայք ի Պուքովինա: Թրգմ. Հ. Գ. Վ. Գալէմքեարեան: 1891: 8° Երես՝ 79: Ֆր. —.85

Ե. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Ուսումնասիրութիւնք Ստոյն-Կալիսթենեայ վարուց Աղեքսանդրի: 1892: 8° Երես՝ Դ+272: Ֆր. 3.—

Զ. Ալպէր Տրվշէ եւ Գ. Փիւոն, Ուղեւորութիւն ի Փոքր Ասիա: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1892: 8° Երես՝ 82: Ֆր. 1.—

Է. Մառ Նիկ., Ամառնային ուղեւորութիւնից դէպ ի Հայս: Թրգմ. Ոնոփրիոս Անոփեան: 1892: 8° Երես՝ 89: Ֆր. 1.25

Ը. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ: Հտ. Ա.: Թրգմ. Հ. Յ. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Ժ+51: Ֆր. 1

Թ. Գալէմքեարեան Հ. Գրիգորիս Վ., Պատմութիւն հայ լրագրութեան: Հտր. Ա. 1794–1860: (1 լուսանկարով:) 1893: 8° Երես՝ 232: Ֆր. 2.50

Ժ. Կոնիբիր Փր. Կ., Քննութիւնք գրոց Դաւթի Անյաղթի: Թրգմ. եւ յաւ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1893: 8° Երես՝ Է+92: Փր. 1.25

ԺԱ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ 1680—1779: (1 գըն-կատիպ.) 1893: 8° Երես՝ Ժ+533: Փր. 4.50

ԺԲ. Խաչատրեան Գր., Ջենոբ Գլակ, համեմատական ուսումնասիրութիւն: 1893: 8° Երես՝ 78: Փր. 1.—

ԺԳ. Տէր-Մովսիսեան Փարսադան, Հայ գիւղական տունը: Թրգմ. Հ. Բ. Վ. Պիլէզիկճեան: (6 տախտակ՝ 55 պատկ.:) 1894: 8° Երես՝ 103: Փր. 2.—

ԺԴ. Գարիէր Ա., Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. Հտր. Բ. կամ Յաւելուած: Թրգմ. Հ. Ց. Վ. Տաշեան: 1894: 8° Երես՝ ԺԱ+43: Փր. 1.—

ԺԵ. Տաշեան Հ. Ց. Վ., Ուսումնասիրութիւնք հայերէն փոխառեալ բառից: Ա.՝ Հ. Հիւպշման, Սեմական փոխառեալ բառեր հին հայերէնի մէջ: Բ.՝ Փրոքէլման Կ., Յունական փոխառեալ բառեր հայերէնի մէջ: Գ.՝ Հ. Հիւպշման, Հայկական Յատուկ անուանք: 1894: 8° Երես՝ 9+145: Փր. 2.—

ԺԶ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք: Հտր. Ա.: Ա—Զ: Ա. Նեմեսիոս: Բ. Պրոկղ Դիադոխոս: Գ. Խոսրովիկ: Դ. Գիրք Հերձուածոց կամ Եպիփան: Ե. Պրոկղ: Զ. Սեկունդոս իմաստասէր: 1895: 8° Երես՝ ԺԲ+294: Փր. 3.60

ԺԷ. Տաշեան Հ. Յակովբոս Վ., Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Փէթթէրի, ի մի ամփոփուած եւ թարգմանուած հանդերձ ծանօթութեամբք: 1895: 8° Երես՝ 202: Փր. 2.50

ԺԸ. Տիրբեան Կ., Սեւ ծովու ռուսական եզերքը: 1895: 8° Երես՝ 192: Փր. 2.—

ԺԹ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը կամ Նկարագիր Կերլա Հայաքաղաքի ի գիր եւ ի պատկերս: 1896: 8° Երես՝ Թ+352: Փր. 3.60

Ի. Տաշեան Հ. Յակովբոս Վ., “Վարդապետութիւն առաքելոց„ անվաւերական կանոնաց մատեանը. Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս եւ Կանոնք Թադդէի: 1896: 8° Երես՝ Թ+442: Փր. 6.—

ԻԱ. Տոմաշէկ Վ., Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները: Պատմական եւ տեղագրական հետազօտութիւն: Մասն Առաջին՝ Պատմական տեղեկութիւնք Սասնոյ վրայ: Թրգմ. Հ. Բ. Պիլէզիկճեան: 1896: 8՛ Երես՝ Է+62: Ֆր. 1.—

ԻԲ. Կարրիէր Ա., Աքգարու զրոյցը Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ: Թրգմ. Հ. Գաբրիէլ Վ. Մէնէվիշեան: 1897. 8° էջ ԺԶ+107: Ֆր. 1.50

ԻԳ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ: Ուսումնասիրութիւնք եւ քաղուածներ: Մասն Ա. Ռամկօրէն մատենագրութիւնք: Տետր Ա: 1897, 8° էջ Ը+272: Ֆր. 4.—

ԻԴ. Ցովնանեան Հ. Ղ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի եւն: Տետր Բ: 1897: 8° էջ Ա—Ը+273—522: Ֆր. 3.—

ԻԵ. Գէլցէր Հ., Համառօտ պատմութիւն Հայոց: Թրգմ. Հ. Գր. Վ. Գալէմքեարեան: Յաւելուածք թարգմանչին՝ 1. Ցանկ 1895—1897 Հայոց կոտորածներու առթիւ լոյս տեսած գրքերու: 2. Գաւազանագիրք Կաթողիկոսաց եւ Պատրիարքաց Հայոց: 1897 8° էջ Ը+130: Ֆր. 1.50

ԻԶ. Մէնէվիշեան Հ. Գաբրիէլ Վ., Գիրք (կամ յօղուած) գրելու արուեստը: Նորոս հեղինակներուն ուղղեալ քանի մը կարեւոր ակնարկութիւններ: Յաւելուած՝ Գիրք կարդալու արուեստը: 1898: 8° էջ Է+123: Ֆր. 1.25

ԻԷ. Խալաթեան Գր., Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին քննադատական ուսումնասիրութիւնք: 1898: 8°, 56 էջ: Ֆր. 1.—

ԻԸ. Տաշեան Հ. Յ., Ակնարկ մը հայ հնագրութեան վրայ: Ուսումնասիրութիւն Հայոց գրչութեան արուեստին: (10 զնկատիպ պատկերով): 1898: 8° ԺԱ+202 էջ: Ֆր. 2.50

ԻԹ. Դաղբաշեան Յ., Փաւստոս Բիւզանդացի եւ իւր պատմութեան խարդախողը: Մ. Խորենացու աղբիւրների ուսումնասիրութիւն: 1898, 8° 175 էջ: Ֆր. 2.50

Լ. Մսերեանց Ղ., Հայերէն բարբառախօսութիւն: Թրգմ. ի ռուսերէնէ Հ. Գ. Վ. Մէնէվիշեան: 1899, 8° Երես՝ Է+26: Ֆր. —.50

ԼԱ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Ֆր. 5.—

ԼԲ. Քօսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիպ:) 1899: 8°. Երես՝ Է+558: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Է+124: Ֆր. 1.—

ԼԵ. Կարիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակովբոս Վ. Տաշեան: (1 աշխարհագրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48:
Ֆր. —.75

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է—Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Ֆր. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: 8° Երես Ը+110: Ֆր. 1.50



ԼԱ. Քոսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Ա. Զմիւռնիա եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ ԺԲ+369: Ֆր. 5.—

ԼԲ. Քոսեան Հ. Յ., Հայք ի Զմիւռնիա եւ ի շրջակայս: Հատոր Բ. Զմիւռնիոյ վիճակին գլխաւոր քաղաքներն եւ Հայք. (պատկերազարդ:) 1899: 8° Երես՝ Ժ+161: Ֆր. 2.50

ԼԳ. Գովրիկեան Հ. Գրիգոր Վ., Հայք յԵղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ. Բ. Հատոր 1780—1825. (1 զնկատիպ:) 1899: 8°. Երես՝ Ի+558: Ֆր. 5.—

ԼԴ. Գազանճեան Յ., Եւդոկիոյ Հայոց գաւառաբարբառը: 1899: 8° Երես՝ Ի+124: Ֆր. 1.—

ԼԵ. Կարիէր Ա., Հեթանոս Հայաստանի ութ մեհեաններն Ագաթանգեղոսի եւ Մ. Խորենացւոյ համեմատ: Թրգմ. Հ. Յակոբոս Վ. Տաշեան: (1 աշխարհգրկն տախտակով:) 1899: 8° Երես՝ 48: Ֆր. —.75

ԼԶ. Տաշեան Հ. Յ., Ժողովածոյք առակաց Վարդանայ, ըստ Ն. Մառի, տեղեկատուութիւն եւ քաղուածքներ: 1900: 8° Երես՝ ԺԱ+198: Ֆր. 2.50

ԼԷ. Տաշեան Հ. Յ.. Մատենագրական Մանր Ուսումնասիրութիւնք. (տես ԺԶ:) Մասն Բ: Է–Ժ. Խիկար եւ իւր իմաստութիւնն, Ագապետոս եւ իւր Յորդորականք առ Յուստինիանոս, Թղթակցութիւն Աբգարու եւ Քրիստոսի ըստ Նորագիւտ արձանագրութեան Եփեսոսի, եւ Գէորգայ Պիսիդեայ Վեցօրեայք: 1901: 8° Երես՝ ԺԲ+388: Ֆր. 4.50

ԼԸ. Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ: 1901: 8° Երես Ը+110: Ֆր. 1.50

---



